## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

# Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

## ԻԶՄԻՐԼԵԱՆ

## ԲԱՐՁՐԱՇՆՈՐՀ

## Տ. ԵՂԻՇԷ Ս. ԵՊԻՍԿՈՊՈՍ ԴՈՒՐԵԱՆ



ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

Իրենց զնկատիպ Պատկերներով

ԳՐԵՑ
ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ

[illegible] ՀԵՂԻՆԱԿԻՆ ՀԱՍՑԷՆ
Կ. ՊՈԼԻՍ, Հաճօբուլօ խան, թիւ 24

# ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

# Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

# ԻԶՄԻՐԼԵԱՆ

# ԲԱՐՁՐԱՇՆՈՐՀ Տ. ԵՂԻՇԷ Ս. ԵՊԻՍԿՈՊՈՍ

# ԴՈՒՐԵԱՆ

ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆ

Երեք լուսատիպ Պատկերներով

ԳՐԵՑ

ՍԻՄՈՆ ԳԱԲԱՄԱՃԵԱՆ



Կ. Պոլիս, 1908
Տպագր. Զ. Ն. ՊԷՐՊԷՐԵԱՆ



*Ամենապատիւ*

**Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԻԶՄԻՐԼԵԱՆ**

## ԱՄԵՆԱՊԱՏԻՒ

# Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Ս. ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ

## ԻԶՄԻՐԼԵԱՆ

Թուրքիոյ ազատագրութեան այս երջանկաւէտ դարագլուխին գուարթ ազգայինները կը հասնին մինչեւ մենաստանը այն մեծ Աքսորականին՝ որուն դէմքը կը փայլի մանկութեանս տարիներուն մէջէն. նոյն որդիական ակնածանքը, նոյն սէրը, շրթներուս համբոյրները կը տանին միշտ այն պատուական Աջոյն՝ որ կոչուած է անտարակոյս հայութեան ճակատագիրը վարելու: Նա՛, նա՛ միայն է, որուն յառած են իր բիւրաւոր որդիներու կարօտագին աչքերը, մինչ Արարատայ վերեւ սաւառնող փրկութեան հրեշտակը դէպի Սիոնի բարձունքը կը դիտէ, դէպի այն նուիրական վայրերը, ուր 12 տարիներ տառապեցաւ անձկագին սպասումի մը մէջ մեր սիրեցեալ Հայրն Իզմիրլեան Սրբազան՝ Ոսկեբերանի նման կրկնելով յաւէտ. «Փա՛ռք քեզ, Աստուա՛ծ. յաղագս ամենայնի, Տէր, փա՛ռք քեզ»:

Այս վճռական պահուն հոգւոյ աչքերով կը դիտեմ Էջմիածնայ տաճարին մէջ այն լուսեղէն սանդուղը՝ որուն ծայրը երկինք հաստատուած՝ Լուսաւորիչն է հոն կանգնած և ուրկէ ելեւէջ կ'ընեն երանաշնորհ մեր նախնիք, ցայսվայր տառապանքի տակ հեւացող Հայութեան համար աղօթք և օրհնութիւն նուիրելով: Անոնց սուրբ հոգիները թող հրճուին, քանի որ իրենց առաքինութեանց ժառանգ մը ունին հոն Իզմիրլեան Սրբազան:

Անոր սուրբ ձեռքերը պիտի վերցնեն Հայրիկի փոխումով ձգուած սուգի քօղը, Անոր՝ որ իր փարփառ աչքերը կողմնացուցին յառած՝ անվտանգ պիտի տանի Հայութեան նաւը խութերու և մրրիկներու մէջէն. ցարդ Հայրիկն էր Լուսաւորչի գահուն արթուն պահապան, որ առիւծի թաթեր երկընցուցած այդ անգին գանձին վրայ կը հսկէր։

Չհարցընենք ո՞վ է Հայրիկի յաջորդն. այս հարցումին պատասխանը Ազգը տուած է կանուխէն 1892 Մայիս 5ի կաթողիկոսական ընտրութեան ատենն իսկ, երբ Հայրիկ ընտրուեցաւ միաձայն 72 քուէով և Իզմիրլեան շահեցաւ 50 քուէ։ Հայրիկի փոխումով յաջորդութեան կարգը կուգայ Իզմիրլեանի, իբր թէ Աստուած քահանայապետական նոր պայազատութիւն մը շնորհած է մեզ ինչպէս Լուսաւորչի ատենէն մինչև Սահակ Պարթև։ Խրիմեան և Իզմիրլեան թէև ոչ համահայր և համամայր, բայց հոգեկից և սրտակից մէկզմէկու, գրուած են միշտ Ազգին սիրտը, երկու մեծ առաքելականներ, որոնք յաւէտ իրենց սուրբ կեանքը ինչպէս Աբէլի պատարագն նուիրեցին ազգին։

Ներուի ինձ ներկայացնել հետևեալ տողերով Իզմիրլեան Սրբազան Հօր հանրօգուտ կեանքն ոչ իբր յաջողակ կենսագիր մը, այլ իբր աշակերտն Ն. Սրբազնութեան՝ տկար հաւաստիք մը ընծայելու անկեղծ սիրոյս և խորին երախտագիտութեանս։

* * *

Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Ս. ԱՐՔԵՊ. ԻԶՄԻՐԼԵԱՆ(*) ծնած է 1845 Փետ. 12ին ի Գում Գաբու Կ. Պոլսոյ, մկրտուած Ս. Ծննդեան քառասունքին Մայր Եկեղեցւոյ մէջ, և անուանակոչուած՝ Տեա-

(*) Մեր ամենուս սիրելի Իզմիրլեան Սրբազան Հօր սոյն կենսագրականին մէջ ամփոփուած տեղեկութիւնները քաղուած են նախ 1892ի իմ պատրաստած կենսագրութենէս, յետոյ 1894ին անոր Պատրիարք ընտրուելուն առթիւ գրուածներէն, որոնց մէջ ամենէն կարևորն է Ա. Ց. Այվազեանի գրած կենսագրութիւնը (Տես Արևելք 1894 Դեկտ. 24, 26 ԺԱ. տարի. Թ. 3266—7)։

ընդառաջի տօնին առթիւ՝ Սիմէօն. աշակերտած է նախ Մայր վարժարանին մէջ մինչև 1859 և երեք տարի ևս Գում Գաբուի դուրսի Ս. Պօղոսեան ազգային վարժարանը յաճախելով աւարտած է դպրոցական շրջանը։

Իր Իզմիրլեան մականունը առած է իր պապէն, դերձակ Մարտիրոս, որ Զմիւռնացի էր, իսկ հայրն դերձակ Համբարձում, բարեպաշտ արհեստաւոր մը, ինը զաւակներու տէր, որոնց եօթներորդն էր մեր Սիմէօնը։ Ուսուցիչներն եղած են Մկրտիչ Մեզպուրեան՝ Հայերէնի, Տօքթ. Ներսէս Մեզպուրեան՝ բանաստեղծութեան և տոմարակալութեան, Զափրաստճեան Միաչէն Գէորգ պատուելին՝ Թեսաւրոսի բարոյախօսութեան, Յարութիւն Թիւլեան՝ քանակագիտութեան։ Կը սիրէր մանաւանդ ուսումնական աշխարհագրութիւնը։ Մանկութենէ կուսակրօնութեան սէր կը տածէր և դպրոցական հանդէսներու մէջ արտասանած իր ճառերով ապագայ բեմբասացութիւնը կը շեշտուէր։

1862ին շրջանաւարտ ըլլալով իբր մանկավարժ պաշտօն առաւ Օրթագիւղի Թարգմանչաց վարժարանին մէջ, ուր Պէրպէրեան Աւետիս պատուելիի հրահանգներուն տակ ուսումնասիրեց իմացական փիլիսոփայութիւնն։

Այս տեղ խօսքը իր նախկին մէկ աշակերտին է, որ կը ներկայացնէ Իզմիրլեանը իբր մանկավարժ. «Օրթագիւղի Թարգմանչաց վարժարանի հին նախակրթարանին մէջ, ընդարձակ ու մթին սրահ մը փայտաշէն, որուն հետքը չի մնար հիմակ՝ անոր տեղ կառուցուած քարուկիր փայլուն շէնքին մէջ, — դպրոցականի առաջին դողս ու առաջին յարգանքս զգացած եմ դասատիարակի մը հանդէպ, համակ սեւեր հագած ու աղաւամազ մօրուքով երիտասարդ մը, որ իր տարիքին անսովոր պատկառանք մը կ՚ազդէր հարիւրաւոր մանուկներուն, որոնք կը խոնարհէին իր նայուածքին ու իր... եպենոսէ գաւազանին առջև. սրահը ամբողջ կը թաղուէր խորին լռութեան մէջ, երբ անոր վճիտ ու հաստու ձայնը կը հնչէր բարձրաւանդակէն, ուր դրուած կար կառավարչին աթոռը, և բոլոր անառակ պզտիկները խոնարհ

դաւանութիւնները կը դառնային, երբ պարոն Սիմէօնի Թուխ դէմքն ու խոժոռ նայուածքը ստուերագծուէին ապակեար դրան ետևէն։ Յետոյ աշխարհականէն եղաւ սարկաւագ առանց հրաժարելու դպրոցին մէջ իր վարած համեստ պաշտօնէն։ Այն ատեններն —աւելի քան քառորդ դար առաջ— Թաղային դպրոցներու տղաքները աւելի սերտ հաղորդակցութեան մէջ կը դրուէին եկեղեցիին հետ. ամէն շաբաթ իրիկուն խմբովին ժամերգութեան երթալը պարտաւորիչ էր, ինչպէս պարտաւորիչ էր տօնական օրերուն հաղորդուիլը։ Եւ Ս. Աստուածածնայ եկեղեցիին մէջ —այն ալ բոլորովին վերանորոգուած,— ուր չկային հիմակուան ոսկի նստարաններն ու մաքուր ծնրադիրները, հին, փոշոտ գորգին ու պատառուն փսիաթին վրայ ծնրադիր, կը դիտէինք մեր սարկաւագ-դասատուն, որ ո՛րքան ազդու Աւետարան կը կարդար ու այնքան երկիւղածութեամբ կը մասնակցէր ժամասացութիւններուն։ Ու նախակրթարանի գրասեղաններուն վրայէն մեր զգացած երկիւղախառն պատկառանքը՝ տաճարին մէջ մանկական հիացումի մը կը փոխուէր, այն բարեպաշտիկ զգացումով, որ յատուկ է տղայ հասակին(*)։

1864ին Թաքթաքեան Պօղոս Պատրիարքի հրամանով Օրթագիւղի Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյն մէջ տիրացու Սիմէօն Սարկաւագ կը ձեռնադրուի Կապուտիկեան Յովհաննէս Սրբազանէն։ Այս տեղ նոյնութեամբ կ'ընդօրինակենք Պ. Սիմէօնի եկեղեցական կարգ ընդունելու խնդրագիրը, զոր մատուցած է նոյն թուականին Կապուտիկեան Սրբազանին։

«Գերապատիւ Սրբազան Հայր,

«Ինչպէս [illegible] և [illegible] է [illegible]
«[illegible] մը [illegible] համար, նոյնպէս և [illegible]
«[illegible] յարմար [illegible]
«[illegible] համար [illegible] և [illegible]
«[illegible] է։

(*) Տիգրան Արփիարեան, «Արեւելք» ԺԱ. տարի, Թ. 3214 (1891 Փետր. 22)։

«Բայց քիչ այս մասը ձեռնարկը բաւ օրինք ըլլալու համար նախկին
«չէոն կը խնդրեմ Ձեր Սրբազնութենէն, որ Ձեր կրկնակի սուրբ աղօ-
«թարկութեան վրայ, խնամելով Ձեր հնդանայադանական քաղցր
«և սուրբ պաշտօնէ հովուութեամբ, անարժանս իբր որդի անխոնջ աշ-
«խատանօք ծառայելու կը խօստանամ, և այսօրուց ըլլալ քաղցրելոյն մինչև
«գերեզման պաշտօնս և իմ հոգւոյն փրկութեան ըլլալը:

«Որ եմ Ձերդ Սրբազնութեան
«անարժան ծառայ եւ որդի
«ՍԻՄՈՆ Հ. ԻՉՄԻՐԼԵԱՆ»

1894
Ի Միջագիւղ

Յիշենք այստեղ թէ Օրթագեղի վարժարանին մէջ դաստիարակ եղած ատեն՝ ամեն ձեռնութիւն յանձն առնելով Գում Գաբուէն մինչեւ Օրթագիւղ հետիոտն կ'երթեւեկէր որպէս զի իր ստացած թոշակով աւելի կարենայ օգնել իր ընտանիքին: Այն ժամանակներուն մէջ մեր եկեղեցականութեան պատիւ բերող Օրթագիւղի Տէր Սահակ Աւագ քահանայ Տէր Սարգսեան (*) պաշտպանած է մեր սարկաւագը և շատ անգամներ իր տունը ընդունած է. որովհետեւ եկեղեցւոյն քահանաները նախանձելով սարկաւագին արժանիքներուն հակառակորդներին եղած էին անոր. պահ մը նոյն իսկ Կապուտիկեան Սրբազան չէ ուզած ձեռնադրել զանի, վախնալով որ իր տեղը կ'անցնի: Տէր Սահակ քանիցս դիմած է Խաքթաքեան Պօղոս Պատրիարքի՝ Սիմէօն սարկաւագը վարդապետ ձեռնադրել տալու հրաման ստանալու համար, սակայն Պօղոս Պատրիարք չէ արտօնած ձեռնադրութիւնը այն առարկութեամբ թէ ըստ հին կանոնի վարդապետը պէտք է վանքին մէջ ձեռնադրուի և վանքի վրայ:

Բայց երբ Պօղոս Պատրիարք հրաժարած Օրթագիւղ կ'առանձնանայ, սոէպ կը կանչէ իր քով Սիմէօն սարկաւագը և հարցուփորձ ընելով՝ անոր ունեցած կրօնական հմտութեան վրայ կ'սքանչանայ ու յետոյ կ'ըսէ Տէր Սահակին

(*) Այս պատուական քահանան այժմ կրօնի ուսուցիչ է Ներսէսեան վարժարանը. ունի կրօնական երկեր, ինչպէս «Քրիստոնէական Կրօնագիտութիւն», [illegible], Աղօթագիրք և [illegible], բացի ասոնցմէ հրատարակած է լրագրաց մէջ յօդուածներ, նաեւ մի քանի փոքր տետրեր:

«Տէ՛ր Հա՛յր, ի՞նչ մեղք եմ ըրեր տուր վարդապետական ձեռնադրութեան արգելք ըլլալով. շուտ տուր վկայականը բե՛ր, ես ալ ստորագրեմ»:

Ուստի 1869ին Տեղապահ Արիստակէս Սրբազանի օրով, թէեւ Ազգ. Վարչութիւնը որոշած էր ոչ զոք կուսակրօնութեան կոչել, բայց Սիմէօն սարկաւագի կարողութիւնները գնահատելով՝ հրամայուեցաւ անոր ձեռնադրութիւնը որ տեղի ունեցաւ նոյն տարին Յունիս 29ին Ս. Լուսաւորչի Գիւտ Նշխարաց տօնի բարեկենդանի Կիրակին՝ Օրթագիւղի եկեղեցիին մէջ, և անուանուեցաւ Մատթէոս. ձեռնադրիչն էր իր հոգեւոր ծնողը Կապուտիկեան Սրբազան: Յետոյ դարձեալ նոյն տարին Վարագայ Խաչի բարեկենդանի կիւրակէին նոյն եկեղեցւոյ մէջ առաւ գաւազանի իշխանութիւն: Իր քառասունքը լմննալէն անմիջապէս վերջ Խրիմեան Պատրիարքի քով քարտուղար ընդունիլ տուաւ զանի նոյն Տէր Սահակ հայրը:

Իզմիրլեան, ինքնօգնութեան գերազանց տիպար մը, իր նախակրթութեամբ չբաւականանալով, յամառ և տոկուն աշխատասիրութեամբ եկեղեցականի անհրաժեշտ և կարեւոր հմտութիւններով ճոխացուց իր միտքն: Սարկաւագութեան ատենէն կը տքնէր ամէն գիշերներ Կապուտիկեան Սրբազանի փոքրիկ տան մէջ պլպլուն ճրագին լոյսով. օրուան այնքան պարտաւորութիւններէն վերջ իր գիշերային հանգիստը կը զոհէր իր ուսումնական զարգացումին համար: Այնուհետեւ և միշտ իրեն տիրական ձգտումն եղաւ սորվիլ, ուսումնասիրել նախնեաց մատենագրութիւն ու եկեղեցական պատմութիւն, որոնք կը փայլին իր մէկ հմտալից մատենին մէջ. **Հայրապետութիւն Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցւոյ եւ Աղթամար ու Սիս**: Այս գործ հրատարակուած է 1881ին երբ կրօնական խորհրդական ընտրուած էր: Այս պաշտօնավարութեան ատեն ի դիմաց Պատրիարքարանի, Սոյ Տ. Մկրտիչ Կաթողիկոսին հետ անձամբ բանակցելու պաշտօն ունենալուն հայ կաթուղիկոսութեանց վրայ ուսումնասիրութիւններ ըրաւ մաս առ մաս հրատարակելով Փունջին մէջ, որմէ յետոյ առանձին հատոր ձեւացաւ վերոյիշեալ մակագրութեամբ:

Իբրեւ քարտուղար Ազգ. Պատրիարքարան մտնելով՝ հոն աշխատասիրութիւն եւ պաշտօնի խորին գիտակցութիւն ցոյց կուտայ. մերթ Մայր Եկեղեցւոյ Թաղական Խորհրդոյ ընտրողական ժողովին կը նախագահէ եւ ընտրական հրահանգները կը մեկնէ, մերթ Գում գաբուի դուրսի Ս. Յարութիւն Եկեղեցւոյն քարոզչութիւնը կ'ընէ, շատ անգամ ալ կիրակի առաւօտները Մայր Եկեղեցւոյ ամպիոնէն իր քարոզներով կը մխիթարէ ժողովուրդը։ Կը յիշուի նաեւ նոյն ատենները իր կրօնուսոյցի պաշտօնավարութիւնը Մայր վարժարանի եւ Լուսաւորչեանի մէջ։

Ասլրօ էֆ.ի Վարչութեան օրով Կրօնական Ժողովոյ դիւանադպրութեան պաշտօնին կը կոչուի Մատթէոս վարդապետ եւ 1872 Մարտ 17ին քուէից բացարձակ առաւելութեամբ առաջին անգամ Կրօնական Ժողովոյ անդամ եւ Ատենադպիր կ'ընտրուի։ Այս Կրօն. Ժողովոյ օրով տեսուչ խորհուրդներու հրահանգները կը խմբագրուին Մատթէոս վարդապետի ջանքերով եւ կը տպագրուին. յիշենք առնցմէ Ազգային վարժարանաց բարեկարգութեան հրահանգը, որ երկար ատեն առաջնորդ եղաւ մեր բոլոր դպրոցներուն։(*)

Այն ատեններն էր որ Վարչութեան կողմէ Պրուսա կ'երթայ Ղազարոսեան Քրիստոստուր էֆէնտիի հետ Առաջնորդական խնդիրը կարգադրելու պաշտօնով, որուն մէջ կը յաջողի իր ազդեցիկ ընթացքով։

1872 Դեկտ. 29ին Սսոյ Կաթողիկոսական խնդրոյն համար կազմուած յանձնաժողովին գործօն անդամը կըլլայ։

1873 Յունուար 29 ին ի վարձ իր բազում ծառայութեանց Պատրիարքական Տեղապահ Աղասեան Նիկողայոս Սրբազան ծայրագոյն վարդապետութեան աստիճանը կուտայ Օրթագեղի եկեղեցիին մէջ Մատթէոս վարդապետի, որ նոյն տարին Իւսկիւտարու Ս. Կարապետ Եկեղեցւոյ քարոզիչ եւ Ճեմարան վարժարանի կրօնի ուսուցիչ կը կարգուի։

Հոս քաղցր է ինձ յիշել ուսանողի տարիներս, երբ Իզ-

(*) 1873 Կ. Պոլիս, տպ. Յ. Միւհէնտիսեանի։

Իզմիրլեան վարդապետ մեզ կրօնի դասը կ'աւանդէր Ճեմարանի մէջ, հաճոյք մըն էր ունկնդրել իրեն և իրմով բուռն սէր մը տածել Հայ Եկեղեցիին համար և Ս. Կարապետ Եկեղեցւոյ մէջ, ուր երկար ատեն վարեց քարոզչութիւնն, լսել իր քարոզներն ու զմայլիլ: Բոլոր ուսանողներս մասնաւոր յարգանք մը, անշէջ սէր մը կը տածէինք անոր նկատմամբ, համարելով զանի ոչ միայն մեր ուսուցիչը, այլ մանաւանդ մեր հայրը: Կը յիշեմ թէ միանգամ հրաժեշտ տուաւ կրօնուսոյցի պաշտօնէն, մեր կարգը ամբողջ զանի վերստին պաշտօնի կոչելու հանրագիր մը ստորագրեց Հոգաբարձութեան ուղղուած. Հոգաբարձութիւնը վերստին հաստատեց մեր ուսուցիչը իր պաշտօնին մէջ. ինչ ուրախութիւն մեզ փոքրիկներուս, որ պիտի գտնէինք դարձեալ մեր հայրը անժպիտ և լուրջ, բայց այնքան պաշտելի մեր սրտին:

1874 ին Պալըքէսէրի վիճակին առաջնորդ ընտրուելով՝ Կրօնական ժողովը արժան կը համարի տալ Իզմիրլեանի Եպիսկոպոսական վկայագիր. այս առթիւ կը պատրաստէ Կրօն ժողովոյ երկամեայ համարատուութեան տեղեկագիրը, զոր կը մատուցանէ նոյն տարւոյ Նոյ. 25ին:

Պալըքէսէրցիք իրենց առաջնորդը ընտրելէն վերջ կը փափաքին որ նախ եպիսկոպոսանայ և յետոյ իրենց վիճակը դառնայ: Այս ըղձին գործադրութիւնը ինչ ինչ արգելքներու բաղխելուն վարչական շրջանակի մէջ, Մատթէոս Վ. կը հրաժարի առաջնորդութենէ, իր հրաժարագրին հետ ներփակելով իր եպիսկոպոսական վկայագիրը:

1875 Հոկտ.ին Գէորգ Դ. Կաթողիկոսի լանջախաչ մը կը խրկէ Տ. Մատթէոս Վ.ի և 1876 Յունուար ամսոյն կը հրաւիրէ զանի ի Ս. Էջմիածին և Տ. Մատթէոս Ծ. Վ. Ապրիլ 9ին Պոլսէն մեկնելուն, հոգելոյս Ներսէս Պատրիարքին գրած եպիսկոպոսական յանձնարարականն կ'ստանայ շոգենաւին մէջ և Մայիս 17ին Համբարձման տօնի օրը իբր միաբան Ս. Էջմիածնայ Եպիսկոպոս կը ձեռնադրուի:

Այնուհետև Մատթէոս Սրբազան իբրև կեդրոնի եկեղեցական կարևոր ծառայութիւններ կը մատուցանէ վարչական շրջանակներու մէջ, կը մասնակցի Պատրիարքարանի

բոլոր ժողովներուն և մասնաժողովներուն և միշտ տեղեկագեր կ'ըլլայ։ Ն. Սրբազնութեան պատրաստած տեղեկագիրները, արդիւնք խղճամիտ ուսումնասիրութեան, իրենց տեսակին մէջ կարեւոր հեղինակութիւններ են։

1879ին Պատրիարքական Խորհրդական, Գեր. Մխիթարեան Խորէն Սրբազանի հրաժարելէն վերջ, 5 ամիս նոյն պաշտօնը վարելէ յետոյ կը հրաժարի Օգոստ. 10 Ազգ. Ժողովին շնորհակալութեան քուէին արժանանալով։

1880ին Կրօնական խորհրդական կ'ընտրուի։

1883ին առաջին ամսուն Կաթուղիկոսական ժողովին անդամ կարգուելով կը պատրաստէ տեղեկագիր մը 115 մեծադիր էջերով, որ յետոյ կը հրատարակուի։

1885ին հոգելոյս Տ. Եսայի Պատրիարքին հետ Երուսաղէմ ուղեկից կ'երթայ և կ Պոլսոյ Նորընտիր Տ. Յարութիւն Պատրիարքին հրաւիրակ ընտրուելով Ազգ. Վարչութեան կողմէ, մայրաքաղաքս կ'առաջնորդէ զՆ. Ամենապատուութիւն։ Մատթէոս Սրբազան թէպէտ քանիցս գաւառական պաշտօններու կոչուած է, սակայն ինչ ինչ պատճառներով չէ ընդունած։ Իբր եկեղեցական երեսփոխան ուշագրաւ է իր հայրենասէր ոգին և կենսական խնդիրներու մասին կուռ տրամաբանութեամբ լի ատենախօսութիւններն և իր ուղիղ տեսութիւնները գնահատուած են Ազգին երեւելիներէն, պաշտօնական մարմիններէն, նոյն իսկ իր ընդդիմախօսներէն։

1886 Յունուար 3ին Եգիպտոսի Գաւառական ժողովը միաձայնութեամբ առաջնորդ կ'ընտրէ զՏ. Մատթէոս Սրբազան, որ Մարտ 17ին հոն կ'ուղեւորի։ Չորս տարիներ կը վարէ այդ առաջնորդական պաշտօնն և վերջապէս կը հրաժարի կլիմային անյարմարութեան պատճառաւ։ Անոր շնորհիւ Գահիրէի առաջնորդական պարտքերը կը մաքրուին, ներքին շինութիւններ կ'ըլլան, դիւանատունը կը վերակազմուի, օրինաւոր արձանագրութիւններ կը հաստատուին, Խորէնեան վարժարանը կը բարեկարգուի, գերեզմանատունը կը շրջափակուի, ուր մատուռ մը շինել կուտայ առաջնորդ Սրբազանը, ինչպէս նաև Գահիրէի Ս. Աստուածածնայ եկե-

ղեցին հիմնապէս կը նորոգէ, կը զարդարէ, կտակներուն ուղղութիւն կուտայ։ Այս ծառայութեանց համար տեղւոյն ազգայնոց սէրը կը գրաւէ, սէր որ մինչեւ ցայսօր կը տեւէ. եգիպտական Հայ գաղութին առհասարակ ամէն անդամներն ինչպէս նաեւ իրենց բարեգործութիւններով նշանաւոր հանգուցեալ Վսեմ. Պօղոս փաշայ Նուպար և Վսեմ. Աբրահամ փաշայ Բարթող կը հիմնեն Մատթէոս Սրբազանի մեծ կարողութեանց վրայ. մկա՛յ ներկայ կաթուղիկոսական ընտրութեան համար որոշուած պատգամաւորին կը յանձնարարուի միայն Իզմիրլեանի տալ քուէ և ըստ այնմ արտասահմանի թերթերուն հրատարակել անոր արժանաւորութիւնը։ Ազգ. վարչութեան առաջարկութեամբ Բ. Դուրեան վեհ. կոյսեր տեղեկագրեց Իզմիրլեան Սրբազանի արժանիքի մասին, որ վարձատրուեցաւ կոյսեր կողմէ Գ. կարգի մեճիտիյէի պատուանշանով։

Եգիպտոս եղած ատեն Տ. Մատթէոս Սրբազան Հաբէշիսթանի Մենելիք Բ. թագաւորին հայ լեզուաւ օրհնութեան գիր ուղղեց, որուն փոխարէն թագաւորը արքայական առանձին հրովարտակով Ոսկեղէն Խաչ նշան մը ղրկեց Ն. Սրբազնութեան։

1887 և 1889ին Պոլսոյ կուգար ամառները և պարբերաբար Ալէմտաղի և Եադաճըգ անցունելէ յետոյ կրկին Եգիպտոս կը դառնար. քանիցս հրաժարեցաւ բայց միշտ մերժուեցաւ իր հրաժարական, վերջնապէս հրաժարեցաւ առողջական պատճառներով 1891ին։

Եգիպտոսի առաջնորդութենէն հրաժարելէն վերջ կրկին Իւսկիւտարու Ս. Կարապետ Եկեղեցւոյ քարոզիչ կ'ըլլայ. նոյն ատենները Կեդր. վարժարանի Բարձր. կարգերու կրօնի դասերը կ'ստանձնէ առանց դրամական ակնկալութեան։

Արդէն իր անշահախնդրութիւնը ամէն պարագաներու մէջ ապացուցուած է. նկատած է նա դրամը լոկ փոխանակութեան միջոց և ոչ երբեք պաշտումի առարկայ։ Եգիպտոսէ հրաժարելէն վերջ Գաւառական ժողովը չնկատելով զանի հրաժարուած, դիզուած ամսականներն իբր 70-80 ոս-

կի կը յղէ իրեն, բայց ինք կը վերադարձնէ այդ գումարը տեղւոյն ազգային արկղին։

Իր գործունէութեան և անշահախնդրութեան փայլուն ապացոյցն է հետևեալը։ Իզմիրլեան Սրբազանի առաջնորդութեան ատեն, տեղւոյն ազգային կալուածները, որոնք Թագւոր փաշայի անուան փոխանցուած էին, կը յաջողի ազգին վրայ դարձունել և երբ այս գործողութիւնը կատարուելէն երեք ամիս վերջ Թագւոր փաշա կը մեռնի, կալուածները կորուստէ կ'ազատին։

Այս Փերայի գործողութիւնները ուրախելէն ետքը օր մը Նուպար փաշա ի վարձ Իզմիրլեան Սրբազանի այս ծառայութեանց, կը յանձնէ անոր 2000 ոսկիի չէք մը յայտնելով թէ ուխտին իսկ պահանջել իր իրաւունքն է։ Սրբազանը կ'առարկէ թէ՝ «Ես առանձին մէկն եմ, ինչ պէտք ունիմ այսքան դրամի»։ Ուստի կը մերժէ դրամը. բայց երբ Նուպար փաշայ կը պնդէ, այն ատեն Իզմիրլեան կ'առաջարկէ փաշային, որ այդ դրամով կալուած մը գնէ իրեն համար և երբ կալուածը կ'առնուի, առժամեայ կերպով ազգին կը փոխանցէ, փաշային չզգացնելու համար պահ մը թէ կը մերժէ ընդունիլ այդ կալուածն, զոր յետոյ բոլորովին կը նուիրէ։

Իր առաջնորդական ամսականն 25 ոսկի էր և Եգիպտահայք պայման դրած էին որ ամէն ծախք իրենց կը վերաբերէր։ Անգամ մը ծանր հիւանդութեամբ անկողին կ'իյնայ վտանգաւոր կերպով։ Տիգրան փաշա Ապրօ, Գաւառական Ժողովոյ ատենապետն իր ընկերներուն հետ ամէն միջոց ի գործ կը դնէ, առաջնորդարանէն փոխադրելով հիւանդը առաջնակարգ պանդոկ մը և բժշկական դարմաններու ենթարկելով զանի։ Սրբազանը ուր ուրեմն կը փրկուի ամէն վտանգներէ և մեկնելէ առաջ նոյն տեղէն, կ'ուզէ հաշիւը փակել; բայց յանձնարարուած էր պանդոկապետին որ բնաւ դրամ չառնու Սրբազանէն. պանդոկապետը կը մերժէ առնուլ։ Սրբազանը կը պնդէ. «Անկարելի է, կ'ըսէ. պէտք է իմ հաշիւս ես մաքրեմ»։ Այն ատեն պանդոկապետը ստիպեալ կը ներկայացնէ հաշիւը, որ երբ 30 ոսկիի կը յանգէր,

զոր կը վճարէ Սրբազանը։ Ցետոյ երբ Տիգրան փաշա կուգայ առողջութեան համար իր խնդակցութիւնը յայտնելու կը հարցնէ «Ինչո՞ւ վճարեցիք ձեր ծախքերը. մեր պարտքըն էր այն»։ Այն ատեն Սրբազանը կը հանէ գրպանէն Գաւառական Վարչութեան պաշտօնագիրը, որուն մէջ գրուած էր թէ 25 ոսկի էր ամսականը և ամէն ծախք իրեն կը վերաբերէր։ Տիգրան փաշայ այն ատեն խնդալով կ'ըսէ. «Ամման Սրբազա՛ն, այդպէս քարը ձիւղ մարդուն ճակտին չեն զարներ», Եգիպտահայք չգիտէին Նախապէս իրենց Առաջնորդին անշահախնդրութիւնը և պարապ տեղը այսպիսի դրամական պայմաններու տակ կուզէին ճնշել անոր վեհ հոգին։ Անգամ մը ևս Եգիպտոսէ դարձին առողջութիւնը դարմանելու համար Ալէմտաղի գացած էր։ Սամաթիայէն կը հրաւիրուի դպրոցական դաշտային հանդէսին Նախագահելու ։ Հոգաբարձուներն էին Տեարք Յով. Կաճիկեան, Գէորգ Փափազեան։ Իզմիրլեան կ'ընդունի հրաւէրն և կուգայ Ալէմտաղէն Նախագահելու։ Երեկոյին կ'օրհնէ զամէնքը և կը բաժնուի կրկին Ալէմտաղի դառնալու։ Կաճիկեան էֆ. այն ատեն փափկութեամբ ափը կը դնէ երկու ոսկի։ Սրբազանին ուրախ դէմքը յանկարծ կը փոխուի և կը հարցընէ. «Ի՞նչ է այս»։ Կաճիկեան էֆ. կ'ըսէ։ «Ոչինչ, ճանապարհածախս մը միայն»։ Իզմիրլեան խոժոռ կը մերժէ և ձեռքը գրպանը տանելով դրամապանակը կը հանէ և ինքն ալ երկու ոսկի կը դնէ Կաճիկեանի ձեռքը ըսելով. «Աս իմ չնչին նուէրս ըլլայ աղքատիկ տղոց կրթութեան համար»։

Կը հանդիպինք Իզմիրլեան Սրբազանի պատրիարքական շրջանին, երբ արդէն հայաբնակ գաւառներու մէջ մահուան սարսափը տարածուած էր և հայութիւնը զոհ կուտար իր բազմաթիւ զաւակները։ Այս վիճակին մէջ Աշըքեան Պատրիարք իր ազգավնաս թոյլ ընթացքով, հլու կամակատար կառավարութեան հրամաններուն, ի զո՞ւր կը նստէր իր գահուն վրայ, ուրկէ «վա՛ր իջիր» կը գոռային ամէն կողմէ ու վերջապէս ստիպուեցաւ հրաժարիլ։ Այն ատեն ամէն աչքեր Տ. Մատթէոս Սրբազանի դարձան և 1891 Դեկտ. 7ին Զա-

րեքշաբթի օր Պատրիարք ընտրուեցաւ Ազգային Ժողովոյ 67 քուէով. ներկաներն էին 76. վաւերացուեցաւ Դեկտ. 20ին ու 26ին Իւսկիւտարէն Պատրիարքարան առաջնորդուեցաւ անսահման խանդավառութեամբ։ Նոյն օր երբ 20,000 ազգայիններ լեցուած էին Մայր Եկեղեցւոյ տաճարին և Պատրիարքարանի փողոցը, այնպէս որ դժուար էր անցք մը գտնել հանդիսաւոր Թափօրին, որ Ն. Պատրիարքը կը բերէր դէպի Մ. Տաճար։ Անհնար էր հոն լսեցնել իր ուրախութիւններուն մէջ յափշտակուած ամբոխը. բայց երբ բարձրացաւ բեմը իր սահմանադրական ուխտի քարոզը տալու, լսեցին ամէնքը և Նորընտիր Պատրիարքը սկսաւ խօսիլ այսպէս.

« Տեա՛րք Երեսփոխանք,

« Պատկառելի Ժողովդ իւր Դեկ. 7ի նստին մէջ կատարուած ընտրութեամբ կոչեց զիս Կ. Պոլսոյ Պատրիարքական պաշտօնին։ Այս պաշտօնն ո՛րչափ փափուկ և դժուարին, այնչափ և աւելի ևս անարժէք էր իմ անձս, և հեռի այն պաշտօնին պարտականութիւններր կատարելու թէ՛ մտաւորական և թէ՛ ֆիզիքական և թէ այլ կարողութիւններէ. բայց մէկ կողմէ եկեղեցական կոչումս կը պարտաւորէր զիս համակերպիլ առաջման Պատկառելի Ժողովոյդ և միւս կողմէ այն մեծ վստահութիւնն և համակրութիւնը, զոր իւր կատարած ընտրութեամբն ցոյց կուտար Պատկառելի Ժողովդ, որ օրինաւորապէս կը ներկայացնէ Հայոց Ազգն ի Թուրքիա, համարձակութիւն տուին ինձ յԱստուած ապաւինած ընդունիլ առանց ի հաշիւ առնլու ֆիզիքական քայքայեալ վիճակս, որ ամենուդ յայտնի է. ուստի շնորհակալութիւն առ Պատկառելի Ժողովդ յանձին իմ կատարած անարժանաւոր ընտրութեան համար. նոյնպէս շնորհակալութիւն առ Իմպերական միահեծան Կայսրն, որ հաճեցաւ վաւերացնել իմ ընտրութիւնը և արդ կը կատարեմ Պատրիարքական ուխտը »։

Ուխտը կատարելէ վերջ կը բացատրէ իր պաշտօն, անընդհատ կեցցէններով ու ծափահարութիւններով ընդմիջուած և կը խնդրէր միայն [illegible], ինչպէս և [illegible] աղա-

հովութիւն կառավարութենէն՝ հաւատարիմ Հայ ազգին համար, վասն զի յայտարարեց Թէ «Առանց կեանքի, ինչքերու և պատուոյ ապահովութեան՝ հաւատարմութիւնը գոյութիւն չունի»։ Տեսնելու էր զինք հոն սուրբ տաճարին մէջ, ճարտար նկարչի մը վրձինին արժանի այդ տեսարանը անմոռանալի է ինձ. Նոյն պահուն կեցցէներուն գոռ ձայներուն խառնելով տկար ձայնս՝ ընդհանուրին հետ՝ անձայր գոհունակութիւնով մը կ'ընդունէի ես ալ անոր խօսքերը։ Աջ կողմը կեցած էր հոգելոյս Ալէաթճեան Սրբազան, կարծես իբր մարդկեղէն նիզակ մը, ան ալ սիրուած ժողովրդեան ամէն դասակարգէն, դէմքը կը ճառագայթէր անհուն ուրախութեամբ մը, մինչ Ազգ. Ժողովոյ Փոխ-Ատենապետ, ողբացեալ ուսուցչապետն Պէրպէրեան, իր երեսփոխանի աթոռին վրայ բարձրացած՝ հազիւ վեր ցոյց կուտար իր պայծառ դէմքը ամբոխին ալիքներուն ծփանքին մէջ։

Ահա Թէ ի՛նչպէս կը նկարագրէ յաջողակ գրիչ մը նորընտիր պատրիարքին վսեմ դէմքը Ս Խորանին առջև.

«Խորանը ամբողջ լուսազարդուած է. լուսոյ բիւրաւոր ցոլքեր կը պաշարեն Ն. Սրբազնութիւնը, որուն դէմքը անոնց մէջէն կ'երևի սրբազան պատկերի մը հանգունատիպ. խորանին վրայ կեցած է ուղիղ, սև վեղարը իր ուսերը ձգած այդ դէմքին վրայ, կը սաստկացնէ այն միանձնի ու հաւատացեալի աննիւթականութիւնը, զոր ունի իր կերպարանքը. ցաւէն ու խստամբեր կեանքէն կարկամած դիմագիծերը, խոհուն ու գիտակից տխրութիւնը, որ իր աչքերուն մէջ կեդրոնացած է, տրտմական ծալքը իր շրթունքներուն, այն ամբողջ դառն ու ինքնամփոփ զգացողութիւնը, որ իր դիմագծութիւնը կը սրբացնէ, պատկառանք կը հեղուն չորս դին։ Դաշն ու հանդիսաւոր ձայնով մը կը խօսի, խորունկէն եկող ձայնով մը, և ի տես այն ազդեցութեան զոր իր խօսքերը կը ընեն հաւատացեալ ժողովրդին վրայ, տրտմութիւնը և դառնութիւնը պահ մը կ'անհետին աչքերէն և երանութիւն մը կը սփռուի իր դիմագիծերուն վրայ։(*)»

---

(*) Հայրենիք, 25 Տարի, Թ. 1031. 1896 Դեկտ. 27։



*Բարձրաշնորհ*

**ՏԷՐ ԵՂԻՇԷ Ս. ԵՊԻՍԿՈՊՈՍ ԴՈՒՐԵԱՆ**

Ամենէն տագնապալից օրերու մէջ կը բարձրանայ Իզմիրլեան Սրբազան Պատրիարքական աթոռը. քաղաքական արհաւիրքի այն շրջանին աղէտքը քան Լատտիվերոտցիներ կարող չեն լիուլի կերպով նկարագրել: Այդ տխուր շրջանին մէջ Պատրիարք եղողին համար անխուսափելի էր կամ մա՛հ կամ աքսո՛ր:

Թէեւ կառավարութիւնը Իզմիրլեան Սրբազանի գրած ամէն թագ'րիրները կէտ առ կէտ կը գործադրէր, բայց դառնագոյն դէպքեր իրարու կը յաջորդէին և Վարչութեան անդամները ահաբեկ թէեւ, բայց մինչեւ ցվերջ իրմէ անբաժան եղան. անոնց հետ կը կարգադրէր ամէն խնդիր և առանց ժողովի հաւանութեան ո և է խնդիր ինքնագլուխ չէր կատարեր: Դեսպանները ինքնին յարաբերութիւն ունենալով Ս. Պատրիարքի հետ, մեծապէս կը գնահատէին անոր տրամաբանող ոգին: Անոնց միջոցաւ հայաբնակ գաւառներու բարենորոգմանց ծրագիրը ընդունուեցաւ Բ. Դրան կողմէ, սակայն ոչինչ գործադրուեցաւ: Ս. Պատրիարքը կը խնդրէր զայն Բ. Դռնէն՝ որ կը պատասխանէր թէ «Դեսպաններէն կրնաք առնուլ». բայց Իզմիրլեան Սրբազան դիտողութիւն կ'ընէր թէ ինք միայն Բ. Դուռը կը ճանչնայ պաշտօնական յարաբերութեանց համար: Պէտք է գիտնալ թէ ինք երբեք դեսպաններուն(*) դիմումներ ըրած չէ, այլ անոնք իրեն կը դիմէին, որոնց կանուխէն կ'զգացնէր թէ «Բարենորոգմանց ծրագրին Բ. Դռնէն ընդունելութիւնը գաւառներու մէջ հակազդեցութիւն յառաջ պիտի բերէ»: Այս գուշակութիւն, արդիւնք Տ. Մատթէոս Պատրիարքի հեռատեսութեան, դժբախտաբար իրականացաւ ու այս պատճառաւ է որ Ազգը այսօր կ'ողբայ իր հազարաւոր նահատակներն:

---

(*) Դեսպանները կանոնաւոր շրջան մը կ'ընէին ի Պատրիարքարան, այնպէս որ Անգլիոյ դեսպանը երբ գար, ետեւէն քիչ յետոյ ուրիշ դեսպան մը կը հասնէր: Մի անգամ Գաղիոյ դեսպանը եկած էր եւ բաժնուելու պահուն երբ Պատրիարքին աջը կը թօթուէր, նոյն վայրկենին հասաւ Ռուսիոյ դեսպանը, որուն եւս Ս. Պատրիարքը կարկառեց ձախ ձեռքը եւ ինք մնաց երկու դիւանագէտներու մէջտեղ, որոնք կը խնդային իր այս հնարքին վրայ:

Տ. Մատթէոս Պատրիարքի դիտողութիւն կ'ընէին պաշտօնապէս ուղղակի կամ անուղղակի միջոցներով թէ իր խնդիրները փոխանակ Բ. Դրան հաղորդելու, ուղղակի Կայս. Պալատ մատուցանէ. բայց ինք կը պատասխանէր թէ «Մենք Վեհափառին պէտք է դիմենք միայն իր շնորհներուն համար շնորհակալ ըլլալու, օրհնելու զԱյն, աղօթելու Անոր կեանքին համար։ Պէտք չէ Վեհ. Կայսրը զբաղեցնենք մեր մասնաւոր խնդիրներով. որովհետեւ Կայսեր դիմել կը նշանակէ չհետապնդել. նա իր պաշտօնեաներն ունի Բ. Դրան մէջ. անոնց պէտք է դիմենք և երբ մեր խնդիրներն յապաղին, կրնանք հետապնդել»։

Իսկ կառավարութեան մասին գոհունակութեան գիր տալ՝ անկարելի և այս նկատմամբ եղած ամէն առաջարկութիւնները յաւէտ կը մերժէր։ Իրեն օրով դադրեցաւ Օրացոյցի հրատարակութիւնը, որովհետեւ Մէարիֆ իր քմահաճ յապաւումներն ի գործ դրաւ անոր մէջ, ինչպէս «Արգասրու Թագաւորին մերոյ» (մերոյն ջնջուած), նոյնպէս «տօն Մանկանց քառասնից որք ի Սեբաստիա կատարեցան ի հնումն» (ի հնումն աւելցած) եւն., այս պատճառաւ Տ. Մատթէոս Պատրիարք հրամայեց Օրացոյց չտպել, այլ ձեռագիր պատրաստել տալով Ազգ. Պատրիարքարանի մէջ բազմագրութեամբ, կը ցրուէր Պոլիս և գաւառները։

Նահատակներու չարաչար մահով Ազգն ունեցաւ որբեր և այրիներ, որոնց օգնելու համար Տ. Մատթէոս Պատրիարք բազմապատկեց իր ջանքերն, նպաստներ ընդունեց և բաշխեց զանոնք հայաբնակ գաւառներ Պորտ ընկերութեան գանձապետ Մր. Բիթլ(*) միջոցաւ և իր ջանքերով իբր 20000 ոսկի հանգանակուեցաւ և անոնց ճշգրիտ հաշիւներն, հայերէն և գաղ. տպագրել տալով բաշխեց ամէն կողմ։

Ըսինք վերեւ թէ Իզմիրլեան Սրբազան դրամի մարդ

---

(*) Այս ազնուասիրտ Ամերիկացին նոյն դժբախտ օրերուն մէջ մեծ ծառայութիւն մատոյց մեր ազգին, ոչ միայն դրամ, այլ նաեւ զգեստներ եւ այլ կարեւոր իրեղէններ հասցնելով կարօտեալներուն։ Սրտագին շնորհակալութիւն։

չէր. հետեւեալն ևս որդէն յիշուածներէն դուրս նոր փաստ մըն է առ այդ։

Անգամ մը Քրէտի Լիոնէ Դրամատան պաշտօնեան Պատրիարքարան գալով իմացուց թէ «Իրենց հրամայուած է Բարիզէն՝ Ս. Պատրիարքի անուան վճարել 750 ոսկի. Թող մէկը ղրկուի և դրամը առնու»։ Ս. Պատրիարքը Ելեւմտից Տեսուչը կը ղրկէ հարցնելու Դրամատան Տնօրէնին թէ ո՞վ կը ղրկէ այդ կարեւոր գումարը և ի՞նչ նպատակի համար։ Տնօրէնը կը պատասխանէ. «Ինք չգիտեր, միայն հրահանգ առած է վճարելու»։ Այս պատասխանին վրայ Ս. Պատրիարքը կրկին կը յղէ Ելեւմտից Տեսուչը թէ Հայոց Պատրիարքը կը խնդրէ Դրամատան Պ. Տնօրէնէն, որպէս զի հեռագրէ Բարիզ և նոյն դրամը խրկողին անունը ու ի՛նչ նպատակի համար խրկած ըլլալը տեղեկացնէ։ Այս խնդիրքը կը կատարուի և պատասխան կուգայ թէ խրկողը իր անունը կ'ուզէ գաղտնի պահել, իսկ մասնաւոր նպատակ չունի դրամի գործածութեան մասին. միայն Ս. Պատրիարքին տրամադրութեան տակ կը թողու զայն։

Այս պատասխանին վրայ նոյն դրամը ընդունելով Իզմիրլեան Սրբազան՝ Նպաստից Սնտուկը կը փոխադրէ կարօտեալներուն բաշխուելու համար։

Կը կարծուի թէ Իզմիրլեան Սրբազանին արդարագոյն բայց խիստ ընթացքը Բ. Դուռը նեղացուցած ըլլայ։ Այս ընթացքը մեղմելու մտօք միանգամ այցելեց Երամեան Աբրահամ փաշա՝ Սրբազանին Գում Գաբուի բնակած տունը։ Սրբազանը ի պատասխանի կանչել տուաւ Օսմաներէնի Դիւանապետը Պատրիարքարանէն, յանձնարարելով միանգամայն որ Աչըքեանի օրով գրուած թագրիրներուն տետրը ի միասին բերէ։ Ատոնց մէջէն կարդացնել տուաւ այն թագրիրը, որով Աչըքեան Պատրիարք կ'իմացնէր Կայսերական Պալատան թէ դիմում եղած է իրեն Պօլսոյ Անգղիական Դեսպանատան Թարգմանին միջոցաւ, որ կը տեղեկացնէ Հայոց Պատրիարքին թէ Անգլ. Խորհրդարանին մէջ հարցում եղած է Արտաքին գործոց նախարարի խորհրդականին՝ այսպէս. «Իրա՞ւ է որ հայաբնակ գաւառներու մէջ

հազարաւորներ կը բանտարկուէին, որոնց մէջ նոյն իսկ եպիսկոպոսներ ալ կան, կեանքի, ինչքերու, պատուոյ ապահովութիւն չիկայ, ելն.»։ Այս մասին Անգղ. կառավարութիւնը տեղեկութիւն ուզած է իր Պոլսոյ Դեսպանատունէն, ուստի կը գիտէ իրեն, թէ Հայոց Պատրիարքը պատասխանած է որ իր Ազգը լիուլի վստահութիւն ունի կառավարութեան արդարութեան վրայ, գիտէ թէ յանցաւորները միշտ կը պատժուին և թէ ինք որ և է գանգատ, դժգոհութիւն չունի կառավարութենէն, ու այսպէս ճամբած է Թարգմանը։

Աբրահամ փաշա կը զարմանայ թէ ի՛նչպէս այս խմատով թագրիր կ'ուղղուի իրողութեան եւ ճշմարտութեան հակառակ։

Այն ատեն Իզմիրլեան Սրբազան կը հարցնէ փաշային. «Կառավարութեան այսքան հաճելի Պատրիարք մը կարելի՞ է երեւակայել և սակայն անոր ո՞ր խնդիրը կարգադրած է կառավարութիւնը»։ Ասոր վրայ փաշան իրաւունք տալով Իզմիրլեանի՝ կը բաժնուի անկէ։

Իզմիրլեանի քաղաքականութիւնը, իր ճշմարիտ և անկեղծ հայրենասիրութիւնը իբր Օսմանցի երկրին բարեկարգութիւնն էր, ինչ որ այսօր մեր Թուրք հայրենակիցները կ'իրագործեն. ոչ երբեք ապստամբապետ մըն էր, այլ երկիրը հարստահարող զեղծ պաշտօնեաներու ընդդիմադիր եկեղեցական մը։ Բանիցս դող ի դող կ'այցելէր իրեն Սկիւտարու Արծրունեանց տունը, ուր մերթ կուգար կազդուրուելու իր յոգնութիւններէն, և որուն շուրջ գտնուող լրտեսներ կը դարանէին այցելուները տեղեկագրելու ոստիկանութեան։

Ինք այդ ճնշումներէն աներկիւղ, Ազգին ցաւերուն վըրայ կը մտածէր. մոռցած իր անձը, իր գոյութիւնն իսկ վտանգուած ըլլալուն անտարբեր, որովհետեւ յայտնի կերպով պաշտօնական անձեր՝ օրուան քաղաքականութենէն ազդուած՝ կը հռչակէին Սրբազանը իբրեւ Տէրութեան թըշնամի և գուցէ վնասէին իսկ անոր։ Բայց նա իր անձը զոհելու պատրաստ էր, ինչպէս յայտնած էր մտերիմներուն երբ անոնք իր շուրջը լարուած թակարդներուն վրայ կը խօսէին. «Ինծի ի՛նչ կ'ընեն. շատ շատ կախաղանի վրայ

գոհուած Ցունաց Պատրիարքին պէս. այդ իսկ շատ թեթեւ է իր հազարաւոր զաւակներուս նահատակութեան քով։»

Իզմիրլեան՝ թշնամի կարծուած պահ մը, սակայն այսօր կը հասկցուի թէ նա ամենէն մեծ բարեկամն է երկրին. անոր խնդրածը երկրին բարեկարգութիւնն էր և Հայ ազգին վրայ Օսմանեան դարաւոր հովանիին պահպանումը. նա ոչ երբեք երազած է երեւակայական անկախութիւն մը. ինչ բան կարելի է փոխանակել ազատութեան, արդարութեան, եղբայրութեան բարիքներուն հետ։ Եթէ կարելի ըլլար, հարկ էր Յուլիս 11էն առաջ Թուրքիան վերցնել Եւրոպական աշխարհացոյց քարտէսին վրայէն և տանիլ զայն Ափրիկէի խորերը բարբարոսաց երկիրներու քով. այնքան շատ էին գործուած չարիքները։ Դժբախտաբար ամէն ժամանակի և ամէն դարու մէջ ժողովրդեան ճշմարիտ բարեկամները շատ ուշ կը ճանչցուին. Նորվեկիացի քերթողին Իպսէնի Թատերախաղը, Տոքթոր Շթոքմանը հիացումով կը կարդամ, որուն մէջ կը ներկայացուի ժողովրդեան բուն բարեկամը իբր թշնամի չարաչար հալածուած և ամէն տառապանքի ենթարկուած։

Այդ հալածանքին ու տառապանքին ենթակայ՝ Իզմիրլեան Սրբազան՝ իր զաւակներուն տարապարտ կորուստին վրայ վշտաբեկ և արտմակոծ՝ հրաժարեցաւ և աքսորուեցաւ ի Ս. Երուսաղէմ, յանկարծ զրպարտուած չարաչար իբրեւ յեղափոխական պարագլուխ մը։

1806ին Կ. Պոլսէն կը հեռանայ ի Ս. Սիոն, կը հասնի հոն ուր միաբանութիւնը տխրագին կ՚ընդունի զինքը, անոր պատւոյն արժանի ընդունելութիւնն իսկ ընելու զգուշաւոր ըլլալով և Մատթէոս Պատրիարք կ՚առանձնանայ Ս. Յակոբայ Տաճարին ետեւ արեւելեան կողմը հին Պատրիարքներու յատուկ կայի վրայ յորջորջուած յարկաբաժինը, որ կը բաղկանայ 4 սենեակներէ և մէկ ճաշիճէ։ Երկեան եւս հոն անցուց ժամանակը, թէեւ ի սկզբան պարզ խուց մը յատկացուեցաւ անոր, բայց Մատթէոս Սրբազանի համար որոշուեցաւ եկած վայրկենէն իսկ այս յարկաբաժնին մէջ բնակութիւն հաստատել։ Այդ աքսորավայրին մէջ տառեր-

կու տարիներ անցուց Նա առաւօտէն մինչեւ երեկոյ ընթեր-ցումներով եւ ուսումնասիրութեամբ, առանձնացած բոլորո-վին իբրեւ ճգնազգեաց հայր մը։

Սկիզբները թէեւ եկեղեցի ալ կ'իջնէր; բայց երբ մաս-նութիւններ.եղան, բոլորովին ծածկուեցաւ։

Բայց սովոր էր ամէն երեկոյ ժամը 10ին Տ. Մատթէոս Վ. Գույլքճեանի, Տ. Միսաք Վ. Նշանեանի եւ կամ ուրիշ իրեն սրտակից եւ ցաւակից եկեղեցականի հետ ելնել քա-ղաքէն դուրս կէս ժամ հեռաւորութեամբ, լեռները ձիթա-տաններու տակ պտոյտներ կ'ընէր. եւ 12ին կը դառնար իր մենարանը։ Ծպտեալ ոստիկան մը շատ հեռուէն կը հետա-պնդէր։

Մերթ ընդ մերթ զբօսաշրջիկներու կողմէ միջոցներ ցոյց տրուած են զինքը փախցնելու, բայց ինք յաւէտ մեր-ժած է խիստ կերպով պատասխանելով։

Անտարակոյս գրաւոր աշխատութիւններ ունեցած է իր առանձնութեան մէջ, բնականաբար Եկեղեցւոյ նուիրուած։

Իր ընդունած դրամները, նուէրները միշտ առատա-ձեռնած է։

Յարութիւն Պատրիարք միշտ սիրով եղած է Մատթէոս Արքազանի հետ։ Յաճախ հաշտարարի դեր կատարած է վանական շրջանակի մէջ, իսկ հաշուական խնդրոյն մէջ ձե-ռնպահ մնացած է քսութիւններու պատճառաւ եւ քանիցս գրած է Կեդր. Վարչութեան, զլուած ամէն պարտութիւններէ եւ իր շուրջ լարուած մեքենայութիւններէ, որպէս զի զինք այնպիսի տեղ մը աքսորել տան, ուր Հայ չգտնուի, իր պատճառաւ ամբաստանուելու կամ զրպարտուելու։

Եւ հիմայ, ո՛վ Հայր, ազատ քու կապանքէդ, վերստին կը վայելես քու որդիներուդ հետ ազատ մթնոլորտ, Դու՛, ո՛վ ժառանգդ Նախնի պատուական հայրերու, «Աթանասի մը, Բարսեղի մը, Գր. Նազիանզացւոյ մը, Ոսկեբերանի մը, Ամբրոսիոսի մը, Օգոստինոսի մը, որ լսեցուցին ամէնէն մաքուր բարոյականը» (ինչպէս կ'ըսէ Վիլմէն, Դո՛ւ, Թոռնիկդ Արիստակէսի՝ Վրթանէսի, Ներսէսի, Սահակայ Պարթեւի, Շնորհալւոյ, որոնք երկնակենցաղ սրբասուն կեանք մը չըն-

չեցին աշխարհի վրայ, Դո՛ւ, իշխանդ եկեղեցւոյ, որուն հոգեկան չքնաղ զարդերն են երկաթէ կամք, հաստատամտութիւն, անաչառութիւն, ուղղամտութիւն, օրինապահութիւն, բարձրացի՛ր ուրեմն Լուսաւորչի աթոռն, «Ա. ամուր, պարզ և ուղիղ նկարագրով, որ ամենուն պատկառանք կ՚ազդէ. Բ. անկեղծ և բուռն սիրով հայ ազգին և հայ եկեղեցւոյն նուիրուած, հայ գրականութեան և հայ գեղարուեստին համար, որոնց մշակումին մեծ կեդրոն մը պիտի ըլլայ անտարակոյս Ս. Էջմիածին. Գ. անաչառ, անկողմնակալ ամէն կուսակցութենէ և հատուածէ վեր բռնող, ամէն բանի մէջ ամենէն առաջ ազգին ընդհանուր և հիմնական շահերը միայն դիտող միտքով. Դ. վարչական կարողութիւններով» (*):

Այս խորհրդաւոր պահուն, ո՛ Հայր, հիացած քու առաքինութիւններուդ վրայ Լամբրոնացւոյ հետ կը գոչեմ. «Ո՛վ երանելի և քաղցր Աստուածազգեացն հոգւոյ. այսպիսի վայելէր մեզ քահանայապետ՝ չարչարակից, զգածեալ տկարութեամբ ժողովրդեանս», կրկնելով նոյնպէս Ոսկեբերանի առ Ս. Լուսաւորիչն ուղղած ներբողն, «Զայնպիսին գովեմ ես հովիւ, զայնպիսին վերակացու, զնորայն ողջունեմ զտկարութիւն, զնորայն ընդունիմ զհեզգութիւն, զի ոչ նա զհետ պատւոյն, այլ զհետ նորա պատիւն ընթանայր, ոչ խնդրէր զփառս, այլ խնդրեալ լինէր ի փառաց. այնպիսին վայելէ քահանայապետ՝ ըստ Պօղոսի, սուրբ, անմեղ, անարատ, զատեալ ի մեղաւորաց և բարձրացեալ քան զերկինս»:

Ահա այս քաղցր օրերուն մէջ սրտատրոփ կ՚սպասենք Հոկտ. 3)ին, որ պիտի պսակէ աշխարհի չորս ծայրերէն յայտնուած միահամուռ բաղձանք մը, և Իզմիրլեան սիրելի անունին հանած արձագանգը պիտի թնդացնէ Էջմիածնայ տաճարին կամարները և հոն հաւաքուած գունդագունդ Հայեր պիտի ողջունեն Հայրիկի յաջորդն, այսպէս գոչելով.

ԱՀԱ՛ ՄԵՐ ՀԱՅՐԻԿՆ, ԱՀԱ՛ ԻԶՄԻՐԼԵԱՆ

(*) Տես Արշակ Չօպանեանի յօդուածն ՎԱՂՈՒԱՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԸ, Բիւզանդիոն 2180.

# ԲԱՐՁՐԱՇՆՈՐՀ

## Տ. ԵՂԻՇԷ Ս. ԵՊԻՍԿՈՊՈՍ ԴՈՒՐԵԱՆ

*Իզմիրլեան Սրբազանի այս արժանաւոր ձեռնասունը ներկայացնել հետեւեալ տողերուն մէջ՝ նոր աշխատութիւն մը չենթարկեր զիս, բայց եթէ ինչ որ երբեմն ալ յառաջ գրած եմ (*) անոր Իզմիրի առաջնորդական ընտրութեան առթիւ, զայն լրացնել ինչ ինչ կարեւոր յաւելուածներով։*

*Դուրեան անունը սիրելի եղած է արդէն իր բանաստեղծ եղբօր* Իւսկիւտարու սոխակին *քաղցրիկ երգերով, որուն յիշատակն «իբր ասուպի, ծրարի մը մէջ ամփոփուած կը պահէ իր սրտին մէջ Եղիշէ Սրբազան» ինչպէս կը գրէ տր. Ա. Չօպանեան ուղղած նամակին մէջ (**)։ Բանաստեղծին փայլեալ այդ սէրն ու համակրանք աւելի ընդարձակ համեմատութիւններ առած՝ փոխանցուած է Սրբազանին, այնպէս որ Ազգն այսօր իր ամենէն յուզումնալից ժամանակին մէջ՝ խորին թշուառութենէ մը զէպ ի երջանկութիւն սլանալու պահուն՝ ԴՈՒՐԵԱ՛Ն անունը հաճոյքով արտասանեց. Նա՛, նա՛ եղաւ Պոլսոյ Մայր Եկեղեցւոյ ամպիոնէն ազատութեան աւետիսը տուող այն թռչունը, Նոյեան տապանէն արձակուած աղաւնիին նման կտուցին վրայ կրելով Յոյսի կանանչ ոստը։*

(*) Տե՛ս Արեւելեան Մամուլ (4 Օգոստ. 1904) 34րդ. Տարի Թիւ 32 էջ 769-775։

(**) Տե՛ս Ա. Չօպանեանի ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ, կենսագրական եւ քննադական ուսումնասիրութիւն անուն գործը։

Ես ալ իբրեւ կաթիլ մը խառնուած Մայր Եկեղեցւոյ խաղաղ կամարներուն տակ փոթորկող այդ մարդկային հոսանքին՝ իմ ծափերովս կ'ընդունէի անոր բերնէն թռած ոճի ուժգնութեան թափը կրող այն խօսքերը, որոնցմով մեր ազգային արիւնոտ յիշատակները կը յուզէր և յետոյ Ազատութի՛ւն եղբարց մերոց կ'աւետէր եկեղեցիին կողմէ։ Այս խօսքերը արտասանող բերանը՝ ի դիմաց ժողովրդեան՝ ջերմ համբոյրներով ծածկեց ազնիւ բժիշկ մը Տէր Վահրամ Թորգոմեան։

Բայց պահ մը զսպելով հիացողական աւիւնս, յառաջ բերեմ այստեղ Դուրեան Սրբազանի պատուական կեանքին ընդհանուր գծերը։

ԵՂԻՇԷ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԴՈՒՐԵԱՆ, որուն աշխարհականութեան անունն է Միհրան, ծնած է 1860 Փետր. 25ին, Իւսկիւտարու Եէնի Մահալլէի թաղը, Միր օղլու կամ Փափազ օղլու փողոցի այն տունը որ այնուհետեւ երկար ատեն իրենց բոյնը կ'ըլլայ։ Հայրը կը կոչուէր Աբրահամ, որ մեռած է Սրբազանին Պարտիզակի մէջ վարած տասնամեայ պաշտօնավարութեան շրջանին մէջ և հոն թաղուած. արհեստով երկաթագործ, որ խիստ թէեւ, բայց բարի և որդեսէր հայր մը և իր արհեստին յարամնացութեամբը միայն անկարող եղած է դիւրակեցիկ վիճակ մը ունենալ, որովհետեւ Եւրոպա հետզհետէ յղելով պատրաստ փականք, պարզունակ, նիգ, եւն., դիւրագնի պայմաններով, տեղական երկաթագործներու հացը խլուած է և անոնց ապրուստը դժուարացած։ Իրաց այս վիճակին տխուր հետեւանքը կը կրէին իր զաւակները, որոնք չորս էին, Յարութիւն, որ կանուխ մեռած է և որ իր տաճկագիտութեան շնորհիւ կրցած է ժամանակին հայատառ թուրք լրագիրներու, ինչպէս Մանզումէի, Թէրճիմանը Էֆքեարի մէջ թարգմանիչ ըլլալ, Պետրոս, որ վաղահաս հանճար մը ցոյց տուած է և մեռած է քսանամեայ 1872 Յունուար 20ին. ծնած էր 1851 Մայիս 20ին։ Անոր տապանագիրը գրած է իր մանուկ եղբայրը Միհրան. ատոր մահէն քիչ յետոյ մեռած է Յարու–

թէին եղբայրներն։ Աս երկուքէն վերջը կուգան Ագրիպ-պաս (*) և Միհրան. իսկ իրենց մայրը, առաքինի կին մը, որ իր որդւոց պահապան հրեշտակն եղած է իր անզուգական բարեմասնութիւններով, դէմքով նման իր բանաստեղծ տղուն, ինչպէս ճարտար նկարագրած է բանասէր բժիշկն Տիար Վահրամ Թորգոմեան։

«Մայր Դուրեանի դէմքը ճիշդ Պետրոս Դուրեանինն է. յօնքերը, ականջները Պետրոսինն են, և շրթունքները կը կրեն նոյն իսկ Պետրոսի հեզիկ ժպիտները։

«Այս կինն է որ ժամանակին իր կուրծքը քամած է Պետրոսի բերնին մէջ. ի՞նչ անուշ, ի՞նչ համով կաթ էր արդեօք անկէ վազածը, ի՞նչ զօրութիւն ունէր այն, քի-միական ի՞նչ տարբեր բաղադրութեամբ օժտեալ էր արդ-եօք այդ կաթը, և ի՞նչ տեսակ գաղտնի հիւթ կը պարու-նակէր որ անգամ մը հասուց նշանաւոր տաճկաբան մը, անգամ մը սոխակ բանաստեղծ մը քաղցրերգակ, անգամ մը հմուտ օրէնսգէտ մը և անգամ մըն ալ հայ եկեղեցակա-նութեան պարծանք մը և փառք մը» (**)։ Տիկին Արուսեակ

(*) Այժմ Կ. Պոլսոյ հանրածանօթ օրէնսգէտներէն մին։

(**) Տես Հանդէս Ամսօրեայ, ԺԴ. Տարի 1900 Մայիս–Յունիս Պետրոս Դուրեանի յիշեալ վերնագրով յօդուածը, որմէ հետեւեալ տողերն եւս հարկ կը համարիմ յառաջ բերել.

«Ամէն անգամ որ կ'անցնիմ Պաղլար Պաշիէն, չեմ կրնար կանգ չառնուլ վայրկեան մը այս շիրմին հանդէպ, որուն ցուրտ սպիտակութիւնն ինծի Թափանցիկ կը Թուի, եւ այդ կարծեցեալ Թափանցկութեան մէջէն երազի մը պէս յանկարծ ընդնշմարել ինծի կը Թուի Պետրոս Դուրեանի վէս, սէգ, նուրբ հասակը կամ տեսնել անոր վառ ու աղու աչերուն ցոլումը, զոր մանկութեանս ակնապիշ դիտել ես կ'ուզէի, չգիտեմ սակայն ինչո՞ւ, երբ Պետրոս մերԹ ընդ մերԹ մեր տունը կուգար։

«Այդ ձիւնափայլ շիրմին տակն է, որ կը հանգչի խսպառ Պետրոս Դուրեանի մարմինը, հոդ է որ փտեցաւ անոր զգայուն սիրտը, որ սակայն կենդանի է եւ շատ սրտեր միշտ կը տրոփեցնէ, հոդ է որ չորցան հոն դարձեան այն մատները, որք աննման երգեր հիւսեցին եւ սիրոյ դասեր մեզ շարադրեցին, հոդ է որ իր կեանքին քսանեորդ գարունին մէջ խորշակահար շուշան ծաղկի պէս Թառամեցաւ Պետրոս Դուրեան, զոր իր յուղարկաւորութենէն քանի մը ժամ յառաջ կրցայ տեսնել վերջին անգամ մըն ալ, եւ պիտի չմոռնամ բնաւ զայն։

1905 Մարտի մէջ մեռած է իր որդւոյն Ագրիպպաս էֆ.ի քով վայելելով ընդերկար իրեններուն սէրը և գուրգուրանքը։

Գ. Միհրան ուսած է Իւսկիւտարու ճեմարանին մէջ, որ ժամանակին երբ Նոր-Թաղը բաւական բարեկեցիկ վիճակ մը ունէր, մին էր մայրաքաղաքիս լաւագոյն կրթարաններէն. առաջնակարգ ուսուցիչներ կը յաճախէին հոն, ինչպէս Ֆէլէկեան, Թղլեան, Թուաքան Յարութիւն Թիւլեան, Գարամաթէոսեան, անգղիացի Աւետիս պատուելի Տէր Սահակեան, գաղիացի ուսուցիչներ, ևն. ևն. կրօնի ուսուցիչն էր Տ. Մատթէոս Ծ. Վ. Իզմիրլեան։ Դպրոցին մէջ համակրանքը գրաւած էր իր ուսուցիչներուն։ Տեսուչներն Քրիստոստուր Ղազարոսեան, Տէր Խորէն Աւագ քահանայ Փէհլիվանեան իրենց պաշտպանութիւնը սիրով կ'ընծայէին անոր։ Իր ընկերներն էին Մելքոն Կիւրճեան, Միհրան Աղաճանեան, Կարապետ Աղաբեկեան, Լեւոն Սէմէրճեան, Գառնիկ և Գրիգոր Աճէմեան, Պետրոս Մինասեան, Մինաք, Յակոբ, Գրիգոր Էլէկկիւզէլեան (այժմ Կիւլեանօֆ), Գառնիկ Ազարեան Տարօնեցի, Բիւզանդ Թէրզեան. իսկ աղջկանց կողմը իրենց կարգին համապատասխան կարգը կը բաղկանար հետեւեալներէն, Զապէլ Յ. Խանճեան (այժմ Տիկին Հ. Աստուր), Տիրուհի Գալֆաեան (այժմ դաստիարակուհի յիզմիր), Ակիւլինէ Լութֆեան (մեռած), Վասիլուհի Խանճեան (այժմ Տիկին Զօփուրեան), Սաթենիկ Հաճեան, Մառի Զպուքճեան (Տիկին Պէշիքթաշլեան, մեռած, որուն աղջիկն է Տիկին Մարթէն Յակոբեան,) Գարոլինէ Յակոբեան, (այժմ Տիկին Ասքանազ), Վերգին Խաչատուրեան (այժմ Տիկին Ն. Ծիվանեան), Արտեմիս Տուտեան (Տիկին Սէմէրճեան, մեռած), Վարդանոյշ Լութֆեան (այժմ Տիկին Ամիրայեան), Զարուհի Խանճեան, Վիկթորիա Յակոբօֆ (այժմ Տիկին Տէօքմէճեան). իսկ յաջորդ կարգէն կը յիշեմ միայն Զապէլ Կիւլ-պէնէր, Երանուհի Այվազեան (այժմ Տիկին Բիւզանդ Քէչեան)։

Գ. Միհրան տարի մը աշակերտելով Ս. Խաչ վարժարանը 1872—3, ընկերակից ունեցաւ Տոքթ. Թորգոմեան, Յարութիւն Մրմըրեան, Յարութիւն Մոստիչեան, ևայլն։

Պ. Միհրան դպրոցասէր և բարեպաշտ եղած է միշտ. չափազանց զուարթ, զուարճաբան, կատակասէր ըլլալով սիրելի եղած էր իր ընկերներուն։ Այդ յատկութիւններ պահած է մինչեւ ցայժմ, սակայն ներկային մէջ իր կրօնաւորի լրջութեամբ համեմատուած են անոնք. իր նկարագիրն ալ նոյն եղած է իր բանաստեղծ եղբօր նկարագրին հետ. Պետրոսի կենսագիրն կը գրէ անոր բնաւորութեան համար տողեր, որոնք ըստ ամենայնի կը պատշաճին Սրբազանին(*)։

Իր մանկութեան յատկանշական մէկ պարագան եւս էր իր թաղին տղոց հետ յոյժ կանոնաւոր եկեղեցական հանդէսներ սարքել, հայկական ծէսն ի գործ դնել կրօնաւորի տարազով, քարոզել, եւն.։ Ահա՛ իր ապագայ վիճակին մէկ նախընծայ նմոյշը հեռաւոր անցեալին մէջ։

Տժգոյն և նիհար մանուկ մըն էր կանխահաս լրջութեամբ օժտուած, որ ընկերներուն համակրանք կ'ազդէր և երբ այն՝ դպրոցի պաշտօնէութեան արգահատանքը հրաւիրած էր իր վրայ, կը համարէին զինքը Նոր-Թաղի պարծանքը և բառ առ բառ կը փարուէին անոր հետ։ Անգամ մը հոգաբարձութենէ խիստ պատուէր տուած էր որ թէ՛ ձրի և թէ թոշակաւոր աշակերտները խիստ քննութենէ մը անցընելէ վերջ դպրոց ընդունուին. երկուշաբթի առաւօտ մը, դպրոցին խորհրդարանը՝ որ մանչերու կողմի դրան ճիշդ քովն էր, լեցուած էր բազմաթիւ աշակերտներով. թոշակաւորներէն դրամ, իսկ ձրիավարժներէն արտօնագիր կը խնդրուէին։ Նոյն պահուն ներս մտաւ Պ. Միհրան, որ բարձրագոյն կարգն էր, և Խաչիկ աղա Տուտեան առանց տղուն

(*) «Դպրոցին մէջ իր կարգին զուարթութիւնն էր. ինքն էր կատակաբան, չարաճճի աշակերտը, որուն կատակները թունալից չէին. իր բոլոր բարեկամները կը հաւատեն իր անսպառ զուարթութիւնը, իր աննըման բարութիւնը, հեզութիւնը, համբոյր ու շնորհալի վարքը։ Մէկը վշտացուցած չէ երբեք. անկեղծութիւնը, ոխը, նախանձը, բամբասանքը անծանօթ մնացած են իրեն, ինչպէս եւ ամբարտաւանութիւնը, յանձնապաստանութիւնը։ Համեստ, խոնարհ, սիրող ու ներող հոգի մը, ոսկի քնար՝ որուն կոյս թելերուն վրայ միայն կրնային թրթռալ այն մաքուր երգերը»։ Ա. Չօպանեան, ՊԵՏՐՈՍ ԴՈՒՐԵԱՆ, էջ 30։

արժանապատուութիւնը վիրաւորելու հարցումներով, տալու անոր ձրիավարժի արտօնագիր և ճամբեց։

Գ. Մինհրան ուսանողութեան շրջանին մէջ մասնաւոր սէր ունէր յատ Հայերէնի. Ֆէլէկեանի դասերը անբաւական էին անոր մտքին յագուրդ տալու. ուստի ինքնաշխատութեամբ և մանաւանդ Խաչատուր Միսաքեանի առաջնորդութեամբ, կարդաց ինչ որ Բագրատունի և Հիւրմիւզ արտադրած էին և ինքն ալ բանաստեղծ ծնած ըլլալով սկսաւ արձակ և ոտանաւոր գրութիւններ արտադրել. կը տեսնուէր նա յաճախ գիրք մը ձեռքը ճեմարանի վերի սրահներուն նրբանցքին մէջ կ'երթեւեկէր ընթեռնլով, ծածկուած ձիթագոյն վերարկուով, զոր նուէր ընդունած էր բարեսէր անձէ մը իր մէկ յաջող դամբանականին համար, զոր արտասանած էր նոյն բարերարին անձին մէկ սիրելւոյն վրայ։

Տարւոյն մէջ երեք անգամներ առիթ կ'ունենայինք լսել իր ճառերը. նախ Վարդանանց տօնին, երբ Հայ Եկեղեցին Աւարայրի դիւցազները կը տօնախմբէ, ճեմարանի մէջ սարքուած հանդէսին փայլն էր Գ. Մինհրան, որ Ալիշանի քնարը կը թօթուէր, հայրենասիրական հրեղէն խօսքեր կ'արտասանէր և մենք մեր ծափերով կ'ողջունէինք իր հանճարը և մեր սրտագին գրուատիքը կը նուիրէինք իր բեմական յաղթանակին։ Երկրորդ, Վարդավառի շաբաթ երեկոյին երբ օրուան Պատրիարքներն Մկրտիչ Խրիմեան կամ Ներսէս Վարժապետեան Նոր-Թաղ կուգային եկեղեցւոյ տօնախմբութեան առթիւ, երբ գունդագունդ Հայեր, պանդուխտներ Մուրատատուր Ս. Կարապետին յիշատակով սրտապնդուած ուխտի կուգային մեր Ս. Կարապետ եկեղեցին։

Ուրախ, նոյն իսկ երջանիկ հոն մենք մեր ուսուցիչներուն հետ կարգ կարգ շարուած կը դիմաւորէինք Ս. Պատրիարքը՝ որ հանդիսաւոր մուտք մը կ'ընէր մեր թաղին մէջ, մեր դպրոցին մէջ, որուն սրահին ճակատը բազմած կը լսէր Գ. Մինհրան Դուրեանի ճառը, ուր հանճարի ցոլքեր կը փայլէին, իր եղբօր Պետրոսի հոգիին թռիչները կը պարզէր ան և զամենքը կ'զմայլեցնէր։ Այս առթիւ Գ. Արթիւր Մաղաքեանի արտասանած տաղն կը յիշեմ.

Դա՛ Վարժապետեան անմահն է ՆԵՐՍԷՍ,
Ո՜հ, ի՜նչ զոհ բռաւ այս բառը Ներսէս։

Երրորդ, մրցանակաբաշխութեան հանդէսին էր որ Պ. Միհրան կարդացուած ճառերուն մէջ ամէնէն գեղեցիկը կ'արտասանէր. անոր համար Հայրիկ միանգամ իր մօտ կանչեց զանի և ըսաւ. «Արդեօք դուն Խորենացիի ձա՞գն ես»։

Ուսանողութեան շրջանը աւարտելէն վերջ ուսուցիչ եղաւ 1876էն մինչ 78 նախ իբր օգնական ուսուցիչ Ճեմարանի մէջ և նոյն Թուականէն վերջ գլխաւոր մասնագէտ ուսուցիչ Հայերէնի. իր նախընծայ աշակերտներն եղան. Խաչիկ Արծրունի, Յակոբ Աստուածատուրեան, Օհան Խընտամեան, Գարեգին Համբարձումեան և ուրիշներ. յաջորդ կարգը մերն էր, որոնցմէ կը յիշեմ Գրիգոր Իճաճեան, Բարսեղ Էնքաէրճեան (այժմ Տէր Հմայեակ քահանայ), Արմենակ Աստուածատուրեան, Յարութիւն Գազազեան, Լեւոն Ռուբէնեան, Արմենակ Ջրաճեան եւն.։ Երբ մենէ վերի կարգը ցրուեցաւ, Օհան Խնտամեան շարունակեց իր ուսանողական ընթացքը մեր կարգին մէջ. սա Պօլսոյ աղետալի դէպքերէն վերջ Եգիպտոս գացած է և ի Գահիրէ ուսուցչական պաշտօն կը վարէ ձեռնհասօրէն, ընդհանուրին սիրոյն արժանի ըլլալով։ Մեր կարգը շատ օգտուած է Պ. Միհրանի դասերէն, որովհետեւ դպրոցի ժամանակացոյցի ժամերէն դուրս ալ մի քանի ժամեր անոր առաջնորդութեամբ կ'ընթեռնուինք գրքեր, կ'ունենայինք օգտակար խօսակցութիւններ, որոնց հետ կը խառնուէին մեր ուսուցչին զուարթ ու պատրաստաբան սրախօսութիւնները։

1879ին երեկոյ մը երբ վերջալոյսը կ'ոսկեզօծէր մեր դասարանի պատուհանները. կը խօսէինք Եկեղեցականութեան վրայ, Եզնիկի, Եղիշէի վրայ. այն ատեն մեր ուսուցիչը լուրջ կերպարանք մը առնելով ըսաւ. «Ես ալ անոնց շաւղին պիտի հետեւիմ, եկեղեցական կարգն ընդունելով»։— ուրիշ անգամ մ'ալ թէ «Ազգին ծառայելու լաւագոյն ճանապարհը, կրօնաւոր ըլլալն է». հասկցանք թէ Պարոն Միհրան վարդապետ պիտի ըլլար. արդէն իսկ իր փափաքը գրաւորապէս յայտնած էր քարոզիչ Իզմիրլեան Սրբազանի և նոյն կիւրակէն Հոգեգալստեան տօնին օրը Մայիսին, Ս.

Կարապետ եկեղեցւոյն մէջ վարդապետ կը ձեռնադրուի և կը կոչուի Տ. Եղիշէ։ Իրեն հետ եկեղեցական կարգ կ'ընդունին Տ. Մատթէոս վարդապետ Արծրունի, որ կարճատեւ կեանք մը կը բոլորէ և կը վախճանի, խորունկ ցաւ մը ազդելով մեզ, որ կը սիրէինք զանի իբր մեր դպրոցակիցը և մեր մտերիմը, և Տ. Յովհ. Վ. Արշարունի (այժմ եպիսկոպոս, Առաջնորդ Պրուսայի)։

Տ. Եղիշէ վարդապետ իր քառասնօրեայ ապաշխարանքը լրացնելէ ետքը իր առաջին պատարագը կը մատուցանէ Ս. Կարապետ եկեղեցին և կը քարոզէ այս բնաբանով, «Տէ՛ր, եթէ զշրթունս իմ բանաս, բերան իմ երգեսցէ զօրհնութիւնս քո». իր անդրանիկ քարոզովն լոկ կը յայտնէ իր ապագայ բեմական ճարտարխօսութիւնը, որով կը պարզէ իր կրօնաւորի ծրագիրը այս բառերով. «Այսուհետև մեր կեանքը պարզ է. բեմի-վրայ լեզու, գրասեղանի առջև թուղթ և գրիչ, առանձնութեան մէջ ընթերցմունք և խոկմունք»։

1879ին վերջերը Իւսկ. երեք Թաղային վարժարանները կը միանան և Տ. Եղիշէ Նորընծայ վարդապետն միացման պատճառաւ Ս. Խաչ վարժարանի բարձրագոյն կարգերու ուսուցիչ կը կարգուի և մեր կարգն իբրև բարձրագոյնը Ս. Խաչ կը փոխադրուի, ուր նոր ընկերներ կ'ունենանք, ինչպէս Գ. Կարապետ Գաբրիէլեան, ազնիւ երիտասարդն, որ այժմ յԱմերիկա է։ Ս. Խաչ կեդրոն ուսումնարանն էր և Իճատիէի և Նոր-Թաղի վարժարանները պարզ նախակրթարաններու վերածուած էին. ընդհանուր տնօրէնն էր Համբարձում Իփէկճեան և Հոգաբարձութիւնը երեք Թաղերու Թաղականներէն ընտրուած էր։ Այս միացում տևական չըլլար Թաղային եսասիրութեամբ։ Այնուհետև Տ. Եղիշէ վարդապետ այցելու ուսուցիչ կ'ըլլայ Ճեմարանի, Ս. Խաչ վարժարանի, Իճատիէի Ներսէսեան վարժարանի. պահ մը ևս Գում Գաբուի Մայր վարժարանէն ալ պաշտօնի կը կոչուի. բայց կը հրաժարի անձնական տկարութեան պատճառաւ չկրնալով մինչև հոն երթևեկել։

1880ին Պարտիզակի եկեղեցին համար քարոզիչ մը կը

փնտռուի, միանգամայն տեսուչ մը տեղւոյն դպրոցին։ Ներսէս Պատրիարք նախ կ'որոշէ այդ պաշտօններուն համար Տ. Յովհ. Վ. Արշարունին, որ երբ կը վարանի ընդունելու, Պարտիզակի Տէր Մկրտիչ քահանան զանի դժուարահաճ համարելով՝ յանձնարարութեամբ Ներսէս Պատրիարքի Եղիշէ Վ. կ'ստանձնէ առաջարկուած պաշտօններն, ուստի կը մեկնի հոն 1880ին Սեպտ.ին։ Պարտիզակցիք անոր փիզիքական վիճակը նկատողութեան առնելով կը մեղադրեն Տէր Մկրտիչը, կասկածելով թէ այսպէս տկարակազմ վտիտ վարդապետ մը ի՞նչպէս պիտի գոհացնէ զիրենք. բայց յետոյ կը հասկընան թէ ո՛րչափ բարեբախտ են եղեր որ Տ. Եղիշէ վարդապետը կ'ունենան իրենց քարոզիչ և տեսուչ։ Տասնամեայ արդիւնաւոր շրջան մը կը բոլորէ հոն 1880 Սեպտ.էն մինչեւ 1890 Յունիս ամիսն։ Մինչև իր պաշտօնավարութեան շրջանը՝ Պարտիզակի մէջ կանոնաւոր վարժարան մը գոյութիւն չունէր։ Անոր օրով կը շինուի այժմու դպրոցը, կ'ունենայ յաջողակ աշակերտներ, ինչպէս Եգիպտոսի արդի առաջնորդ Տ. Մկրտիչ Ծ. Վ. Աղաւնունի, խմբագիր-ուսուցիչ Երուանդ Տէր-Անդրէասեան, Գրիգոր Միխալեան, Աստուածատուր Հաբէլեան, եւն. եւն.։

Պարտիզակի պաշտօնավարութեան ատեն Իզմիրեանց Գրական Յանձնաժողովէն անոր քննութեան կ'ենթարկուէին մրցանակի ղրկուած գրքեր, զորս կը քննէր Տ. Եղիշէ Վ. իր մատենագրական բացառիկ կարողութիւններով, զարգացած շնորհիւ անընդհատ աշխատութեան։ Իր քննադատականներէն մին Խորէն Ստեփանէի Խորենացւոյն աշխարհաբար թարգմանութեան վրայ հրատարակուած է 1888ի Արեւելքներուն մէջ։ Նոյնպէս 1888 Սեպտ 29ին երբ Աշըքեան Սրբազան, Արմաշու վանահայրը, Պոլսոյ Պատրիարք կ'ընտրուի, ու այս պատճառաւ հրաւիրակներ Արմաշ կ'երթան, հոն շատերու շնորհաւորականներէն գեղեցիկ կը ճառէ Տ. Եղիշէ Վ. Նոյն ճառը հրատարակուած է Արեւելքի մէջ (1888 Հոկտ. 18)։

1889ին Խորէն Պատրիարք իրեն վստահեցաւ փափուկ պաշտօն մը, և այս առթիւ ճամբորդեց Ռումանիա, Անգղիա, Ֆրանսա և Եւրոպայի այն երկիրները, ուր Հայեր կը գըտ-

նուէրին։ Այս ուղեւորութիւնն իր մտաւորական յօժարութիւններուն ծառայեց, տեսակցելով ի Ֆրանսա հանճարեղ մատենագիրներու հետ, որոնց գործերուն այնքան ընտելացած էր։

Նոյն տարւոյն Յունիս 5ին Պատրիարքական կոնդակով Արմաշու դպրեվանքին խնամակալութիւնը կը հաստատուի եւ Տ. Մաղաքիա Եպիսկ. Օրմանեան վերատեսուչ կը նշանակուի։ Դպրեվանքը կը բացուի Սեպտ. 18ին։ Յաջորդ տարին Տ. Եղիշէ Վ. Պարտիզակի պաշտօնը թողած էր, բաւ համարելով տասնամեայ շրջանը։ Նոյն ատեն Պ. Կարապետ Եզեանց կ'առաջարկէ իրեն Սանասարեան վարժարանի վերատեսչութիւնն ստանձնել։ Դուրեան վարդապետ կը հաւանի. սակայն յետոյ Աշըքեան Պատրիարք եւ Ազգ. բարերար Աբիկ էֆ. Ունճեան կը համոզեն զանի Դպրեվանքի մէջ պաշտօն առնուլ. ուստի Տ. Եղիշէ Վ. Հոկտ. 12ին պաշտօն կ'ստանձնէ յԱրմաշ նախ իբր ուսուցիչ, յետոյ փոխ տեսուչ. իսկ 91 էն մինչեւ 96 Դեկտ. Տեսուչ նորաշէն վարժարանին, որ Կիւտիւկեանի առատաձեռնութեամբ շինուեցաւ իբր 1500 ոսկւոյ ծախքով։

Այս չարաշուք թուականին էր որ Հայոց ջարդերու սարսափը կը տարածուէր նաեւ Արմաշու կողմերը, այնպէս տարաձայնուած էր որ Արմաշու բոլորտիքը եղող հայ գիւղերն ալ պիտի կրէին անագորոյն հարուածը։ Տ. Եղիշէ Վ. կը սրտապնդէ վանքի մէջ զամէնքն ալ, բայց յուսահատութիւնը տիրած էր սրտէն. վայրկենէ վայրկեան կ'սպասէին յարձակումի։ «Ո՛հ, պէտք չէ որ հոս հանգիստ կենանք, մինչ անդին մեր եղբայրները կը ջարդուին։ Օ՛ն, մենք ալ դուրս ելլենք եւ գէթ մահով միանանք մեր եղբայրներուն հետ» կը գոչէ Եղիշէ Վ.։ Բարեբաղդաբար Դպրեվանքցիներուն կասկածը տեղի չունենար եւ միայն ընդհանուր աղէտքին գոյժերովը կը մորմոքին։

1896 Նոյ. 6ին երբ Օրմանեան Սրբազան Պոլսոյ Պատրիարք կ'ընտրուի, Դուրեանի վրայ կը մնայ ամէն աշխատութիւն եւ յաջորդ տարին Ապրիլ վերջը վերատեսուչ կ'ընտրուի. այս թուականէն վեց ամիս յետոյ վանքին փոխ-վա-

նախագահութեան պաշտօնն ալ կ'ստանձնէ. իսկ 1896ի վերջերը կազմուած Կեդր. Վարչութեան կրօնական ժողովոյ Ա. Ատենադպիր կ'ընտրուի։

Խրիմեան Հայրիկ, որ կանուխէն կը ճանչնար Տ. Եղիշէ վարդապետը, գնահատելով անոր բարւոք ծառայութիւնները 1897ին լանջախաչ մը կը շնորհէ և 1898 Հոկտ. 18ին Եպիսկոպոս կ'օծուի։ Ի դարձին Մասիսի մէջ հրատարակած է Մեսրոպի գերեզմանին այցելութեան առթիւ կրած տպաւորութիւնը, որու մասին այսպէս կ'ըսէ մտերմական շրջանակի մը մէջ (տես Բիւզանդիոն, Ը. տարի, Թ. 2402-1904 Օգոստ. 6). «Կեանքիս մէջ մէ'կ անգամ միայն տպաւորութիւն կը-«րած եմ, մէկ անգամ միայն, և զայն ալ դրի առած, Մես-«րոպի գերեզմանին առաջքը, ուր չկրցայ չարտասուել։ «Զգացի թէ ի՞նչ է տպաւորութիւնը և էջմիածնէ վերադարձին «գրի առի տպաւորութիւններս. անկէ դուրս ոչ մէկ պատ-«կեր, ոչ մէկ երեւոյթ յուզած է զիս»։ Նոյն թուականին վերջերն էր որ Եգիպտոսի առաջնորդ կ'ընտրուի, սակայն չընդունիր, իր պատրաստած 10 աշակերտներու շրջանը կիսատ չթողլու համար։ Անոր յետոյ 1901 Մայիս 20ին վարդապետ կը ձեռնադրէ, որք են. Ղեւոնդ Վ. Դուրեան, Մեսրոպ Վ. Նարոյեան, Արտաւազդ Վ. Գալէնտէրեան, Միրուժան Վ. Աշխարհունի, Գրիգորիս Վ. Պալագեան, Սահակ Վ. Օտապաշեան, Երուանդ Վ. Փէրտահճեան, Գարեգին Վ. Խաչատուրեան, Կորիւն Վ. Եսայեան (վախճանած), Եղիշէ Վ. Խաչերեան (վախճանած) (*)։

Վերջապէս Եղիշէ Սրբազան առաջնորդական ասպարէզի մէջ ևս օգտակար ըլլալու համար՝ Զմիւռնիոյ առաջնորդութիւնը կ'ընդունի 1904 Յուլիս 21ին, Այս ընտրութենէն վերջ Պանտըրմա կ'երթայ, անկէ Քիրմաստ քահանայական ձեռնադրութեան համար, յետոյ Օգոստ. 20ին Պիլէճիկ (*)

---

(*) Ասոնցմէ զատ Դպրեվանքը Ազգին նուիրած է 13 վարդապետ որոնց ուսումնական զարգացման մեծ օժանդակութիւն ունեցած է Դուրեան Սրբազան։

(*) Պիլէճիկի արդի առաջնորդն է Տ. Թաթուլ Ծ. Վ. Դուրեան, որ յոյժ արդիւնաւոր կերպով կը վարէ տեղւոյն Ազգ. գործերը հոգ տանելով ի մասնաւորի կրթութեան գործին։

*կ'երթայ քննչական պաշտօնով կարգադրելու համար տեղւոյն Առաջնորդին և ժողովրդեան մէջ ծագած անհամաձայնութիւնը։ Այնուհետև հետզհետէ կ'այցելէ Ատաբազար, Պարտիզակ, Իզմիտ, Արմաշ, ամենուրեք օրհնալիր ընդունելութիւն գտնելով։ Դպրեվանքէն մեկնելուն 4 սարկաւագ պատրաստած էր, զորս իր առաջնորդութեան յաջորդ տարին Արմաշ գալով զանոնք վարդապետ ձեռնադրեց. սոնք են Տ. Գարդէն, Տ. Գասակ, Տ. Շահէ, Տ. Շաւարշ։*

*Դպրեվանքի գործն ալ կարգադրելէ վերջ իրեն յաջորդ ընտրել տալով իր ձեռնասուն աշակերտն, Տ. Թորգոմ Ծ. Վ. Գուշակեան, այժմ Առաջնորդ Սեբաստիոյ, մեկնեցաւ ի Զմիւռնիա իր առաջնորդական վիճակը Դեկտ. 4ին։*

*Զմիւռնիա այն թեմն է որ ընծայած է Կաթուղիկոսական և Պատրիարքական աթոռներուն գահակալներ, ինչպէս Աղաւնի Ստեփան Եպիսկոպոս, Պօղոս Պատրիարք Թաքթաքեան, Մելքիսեդեկ Եպիսկ. Մուրատեանց, Մակար կաթուղիկոսի հետ առաւելագոյն քուէ շահած։ Ասոնց առաջնորդական աթոռին վրայ բարձրանալով Դուրեան Սրբազան (*) իր կարճատեւ պաշտօնավարութեան մէջ իրակա-*

---

(*) Մինչեւ Դուրեան Սրբազանի ընտրութիւնը Պատրիարքական Փոխանորդի պաշտօնը վարեց իբր տարի մը Տէր Դանիէլ Ծ. Վ. Յակոբեան, այժմ առաջնորդ Ա. Պոլսոյ, որ իր անշահախնդիր եւ աննախանձ ոգւով, հեզահամբոյր բնաւորութեամբ սիրելի եղաւ հոն եւ այս առաջնորդական ընտրութեան համար իր ջանքերը չխնայեց, շնորհակալութեանց արժանանալով տեղւոյն Գաւառական Ժողովէն։ Այժմ Ա. Պոլսոյ մեծ հրդեհին աղէտքը դարմանելու կ'աշխատի հոն, հակառակ քանիցս յԵրուսաղէմ հրաւիրուելուն, ուր թերեւս հանգիստ վիճակ մը ունենար։ Բայց նախընտրած է մնալ յԱդրիանուպոլիս եւ հրդեհին աւերներուն վրայ կանգնել կրկին դպրոց, եկեղեցի, եւն.։ Յարգա՜նք իր անքասիր գործունէութեան։

Ահաւասիկ ի՞նչ կը գրէ անոր՝ Իզմիրի պաշտօնի մասին Ա. Մամուլ (1904, դեկտ. 15)։

«Երբ տարի մ'առաջ իբրեւ Պատր. Փոխանորդ Իզմիր կը հասնէր Գեր. Տէր Դանիէլ Ծ. Վ. Յակոբեան, շատեր թերահաւատութեան ժպիտ մ'ունեցան. ոմանք դեռ անծին չծանօթացած հակակրութեան ոգիով մը վարակուեցան, այլք զարմացում յայտնեցին թէ տեղական հանգա-

կացուցած է Թեմականներու յայտերը։ Սահմանադրական օ-րէնքի համաձայն բոլոր ժողովներու կամ խորհուրդներու պատկանող գործերը նոյն ժողովներու թողլով վերին հսկո-ղութիւնը կատարած է։

Հանգանակութեան և այլ միջոցներով նախապէս՝ գոյու-թիւն ունեցող պարտքին գրեթէ մէկ երրորդը, այն է՝ ստի-պողական մասը ջնջած է։

Դպրոցներու բարեկարգութեան մասնաւոր հոգ տարած է, Մեսրոպեան վարժարանի մէջ լրացուցիչ կարգ հաստա-տելով, անոնց հայերէնի և կրօնի դասերը ինք ստանձնած է։ Գիշերօթիկ վարժարան հաստատած է, որուն երրորդ տարեշրջանը պիտի սկսի յառաջիկայ Սեպտ. ին։

Թէև աշխատած է գիշերօթիկի առանձին շէնք մը ու-նենալ, սակայն ինչ ինչ նկատումներով Ազգ. բարերար Նա-զարէթ էֆ. Պագըրճեանի տրամադրած գումարը 2.3000 ոս-կի Փրանկաց Թաղի Ֆէրիսաճէի նորոգութեան յատկացուցած է, որպէս զի տարեկան հասոյթը կրկնապատկուի։

Իր պերճախօս լեզուով գրեթէ ամէն կիւրակէ քարո-զած է Ս. Ստեփանոս Եկեղեցին, և իր թեմին մէջ որոշեալ ժամանակներ հովուական այցելութիւններով մխիթարած է իր ժողովուրդը։

Իբրև կարևոր մաս մը սոյն հակիրճ կենսագրականին կը դնենք այս տեղ ծանօթ գրագէտ Օննիկ էֆ. Չիֆթէ-Սարաֆի հետևեալ տողերը՝ որոնց մէջ ճշգապէս կը ներկա-յացուի Դուրեան Սրբազան։

«Տեսա՞ծ էք զինքը։

«Պարթև հասակ, յաղթ կազմուածք, պատկառազդու երե-ւոյթ, առաջին ակնարկով։ Ասոնք սակայն բաներ են, նոյն իսկ առաւելութիւններ՝ եթէ կ'ուզէք, զորս շատեր ունին, նոյն իսկ ոչ-եկեղեցականներ, բայց ինչ որ գրաւիչ է, եզա-կան ու զմայլելի, իր գլուխն է, իր դէմքը, իր նայուածքը, իր ժպիտը։ Օ՜հ, «անհունապէս այդ փոքրերը» երբ բախտ ու-

---

մանքներուն անծանօթ վարդապետ մը ինչպէս պիտի կրնար կարգի ու կանոնի բերել տեղւոյն առաջնորդարանի խառնակ ինչ ինչ գործերը։ Բայց համբերութեամբ, անվհատ ոգւով, աշխատասէր ու պարզ սրտով մը, Պատր. Փոխանորդ Հայրը կրցաւ անկարելին իսկ ի գործ դնել եւ նաեւ իր յաջողութեան իբրեւ փայլուն երաշխիք օժտեց Իզմիրն Դուր-եան Սրբազանի նման անբասիր եկեղեցականով մը»։

նենաք, մտերմութեան մէջ, մօտէն դիտելու ու վայելելու զանոնք։ Այսօրուան օրս, երբ երիտասարդները, չեն գիտեր ինչո՛ւ, կանուխէն սկսած են ճաղատ դառնալ, Դուրեան Սրբազան, իր յիսունը friser ընելու տեններուն իսկ մօտիկ, առիւծի մը պէս առատ ու խիտ մազերու սաղաւարտ մը կը կրէ դեռ իր գլուխին վրայ, որ թաւ ու թանձր անտառի մը նմանութիւնը ունի, որուն վրայ սակայն սկսած ըլլայ ձիւնել։ Անտառներ կան որոնք իրենց անսահման ծլումին ու ծաւալումին մէջ, մինչեւ ջուրերու եզրը, բնակութիւններու ոտքը. քաղաքներու դուռը ափ կ՚առնեն, կուգան, կը հասնին, կը պաշարեն զանոնք նախանձոտ գուրգուրանքով մը, կարծես բոլորովին իրենց ստուերին մէջը ծրարելու համար։ Ու ճիշդ այդ տպաւորութիւնը կ՚ունենայ մարդ, երբ առաջին անգամ կը տեսնայ մազերու յորդ ու բուղխ այդ բուսականութիւնը, որ այնքան լեցուն եւ իմաստուն ճակտս մը կը շրջապատէ, կը պզտիկցնէ, իր շուքին տակ կը շքացնէ։ Երբ մարդ, հեռուէն միայն ճանչցած է Դուրեան Սրբազանի մեծ արժանիքը, լայնախոհ միտքը, խոր հմտութիւնը ու բազմադիմի կարողութիւնները, ձեռքովը դրածի պէս կը սպասէ հիւկօեան կամարակերպ ճակտի մը դէմ յանդիման գտնալու ինքզինքը եւ կ՚ափշի կը մնայ տեսնալով այդ նեղ երկու նուրբ գիծերով խորշոմուած մթին ճակատը, երբ անդին այնչափ դատարկ ու անշահ մարդիկ, իրենց անապատական ճակատներով կը պարծին։ Եւ սակայն, ճիշդ այդ մթին ճակատը, որուն վրայի հորիզոնական զոյգ խորշոմները ճեպընթացի մը գիծերն են կարծես ուրիշ մտածումը կը սուրայ կը սաւառնի ու ճիշդ այդ մթին ու նեղ ճակատը ճընշուած օդի, խտացած essanceի տպաւորութիւնը կ՚ընէ վրաս եւ չեմ կշտանար դիտելով զայն ու խորհելով հակասութեանը բոլոր այն բաներուն՝ որոնք պզտիկ ծաւալ ունին ու մեծ կարողութիւն։ Իր թուխ դէմքին վրայ ամէն բան կը միտի մռայլ, խորհրդաւոր, մեծաշուք ըլլալու եւ սեւ աչքերուն, նեղ ճակատին, ալեխառն մօրուքին հետ, կուտակուած թխպալորդ ու զօրշ ամպերու որոտումը, մրրկիլը, փայլատակիլը պիտի կարծէիր տեսնալ։ Բայց, փոխանակ ասոր, հաճելի անակնկալը

կ'ունենայ մարդ յուսախաբ ըլլալու՝ եւ ստուերներու այդ դէ-զերուն վրայ յանկարծ կը նշմարես, նուրբ, անբացատրելի, անշօշափելի երկնային ժպիտ մը՝ որ դէմքի գիծերուն յօրին-ուածքին իսկ բնական արդիւնքն է, առանց մասնաւոր դիտու-մի կամ գիտակից ջանքի մը ծնունդ ըլլալու եւ որ սեւական ծիածանի մը պէս պսպղալով կը շեշտէ ու աւելի ազդեցիկ, գրաւիչ կ'ընծայէ նայուածքին խորութիւնը, դէմքին խորհրդա-ւորութիւնը, ամբողջութեան պատկառանքը։

«Նոյն բանը իր սեւ, լայնաբիբ աչքերուն մէջ, այնպէս ինչպէս Դուրեաններն միայն ունին, խիստ, խրոխտ, մթամած, խորաթափանց աչքեր՝ որոնց մէջ պզտիկ ու մետաքսայլ շողիւն մը նոյն դերը կը կատարէ, ինչ որ ունի յաւերժական ժպիտը, կրօնաւորի իր լուրջ ու սգաւոր դէմքին վրայ, հիանալիօրէն թովիչ ու գեղեցիկ աչքեր՝ որոնք Նարպէյի կամ Ռոբէն Այ-վազեանին նազենի ու կանացի pailletés d'or աղուորութիւնը չունին անշուշտ, բայց աւելի առնական, աւելի սաւառնող, մագնիսական ու պաշտելի հմայք մը ունին։

«Անբասիր, սակաւապէտ, սակաւախօս, հեռատես, նրբա-միտ, գործունեայ, խստակրօն, խոնարհ, հեզահամբոյր, ու սկզբունքի տէր միանգամայն. լեզուագէտ, գրագէտ, պերճախօս քարոզիչ, բանաստեղծ միեւնոյն ատեն։

«Եկեղեցականութեան, հանրային գործերու եւ մամուլի մէջ մանաւանդ մտած մէկը չեմ գտած որ, իրաւացի կամ ա-նիրաւ կերպով դատափետուած կամ հակառակորդներ յարու-ցած չըլլայ, իր դպած շահերուն համեմատութիւնով, այն ա-տենէն որ ա՛լ բնական օրէնքի կարգ անցած է ինծի համար, ամէնէն շնորհքով ու պարկեշտ մարդուն համար իսկ լսել խելքէ միտքէ չանցած չարախօսութիւններ ու զզուելի զրպար-տութիւններ։ Դուրեան Սրբազան անօրինակ օրինակ մըն է այս տեսակէտով քանի որ իրարու ամենահակառակ տարրեր կը միաբանին ու կը ճանչնան իր անձին ու գործունէութեան ներբողը հիւսելու համար եւ ամէնէն անհաշտ շրջանակներու մէջ ընդհանուր ու անսահման համակրութիւն կը վայելէ»։

(Մասիս, Ե. Շրջան, 54րդ տարի, 4 Մայիս 1904 Դեկս.)

Դուրեան Սրբազան իբր քերթող և գրագէտ առաջին տեղն ունի մեր մտաւորական աշխարհին մէջ. իր ընթերցումներուն շնորհիւ և ոչ թէ համալսարաններ յաճախելով՝ ամբարած է մտքի մեծ պաշար մը, որուն համար շատ կանուխէն հաւաքած է արժէքաւոր գրքեր իբր 3-4000 օրինակ։ Ուսած է Լատիներէն, Յունարէն, Ֆրանսերէն, Գերմաներէն, Անգլիերէն, Թուրքերէն, Պարսկերէն, Ասորերէն լեզուներն գրական տեսակէտով և արտադրած է ձեռագիր երկասիրութիւններ, երկարժամանակեայ դասախօսութեանց արդիւնք. ինչպէս. 1. Քննական պատմութիւն Հայոց- 2. Ընդարձակ պատմութիւն մատենագրութեան. 3. Պատմութիւն կրօնից. 4. Դիցաբանութիւն Հայոց, 5. Ստուգաբանական ուսումնասիրութիւններ և զանազան ընդարձակ գրախօսականներ, 6. Քերթուածներ ինքնագիր և թարգմանածոյ, եւն. եւն. (*)։

Իր Պատրիարքական Տեղապահի ընտրութիւնը, Յուլիսի 16ին, Չորեքշաբթի օրն, արդիւնք է իր անսահման ժողովրդականութեան։ Պէտք է տեսնել այժմ զՆ. Սրբազնութիւն Պատրիարքական Դահլիճէն ներս թէ ի՛նչպէս իր մաքուր և անբասիր եկեղեցականի փառքերով պսակուած և աննման ժրութեամբ օժտուած կը գործէ անդուլ. այս տագնապի օրերուն, այս բազմապահանջ ժամանակին մէջ չգիտէ վայրկեան մը իսկ տագնապիլ։ Արգոսի աչքերով կը հսկէ ամէն բանի և Բրիարեւսի հարիւր ձեռքերով կը վարէ ազգային գործերը, չխորհելով վայրկեան մը իսկ իր անձին վրայ, զի ո՞չ ապաքէն «Հովիւ քաջ դնէ զանձն ի վերայ ոչխարաց իւրոց»։ Պատի՜ւ և խորի՜ն մեծարանք իր բարձր անունին։

(*) Ունի տպեալ դասագրքեր ալ, ինչպէս Ընթացք ի Գրոց Բարբառ, Ա. եւ Բ. Տարի, Պատմ. Հայ Մատենագրութեան, Ընտիր Ասացուածք, Բառագիտութիւն։